1916 № 41.—Հոկտեմբերի 9

ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 ԿՈՊԷԿ — ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ — 10 ԿՈՊԷԿ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ տարեկան 4** *ռուբլի,* **կէս տարուան 2** *ր.* **50** *կ.։ Բարեգործական Ընկերութեան անդամների, հայ դպրոցների, ուսուցիչների հասարակական հիմնարկութեանց համար՝* **տարեկան 3** *ր.,* **կէս տարուան 2** *ր.։ Արտասահման՝* **տարեկան 5** *ր.,* **կէս տարուան 3** *ր.*

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** *Թիֆլիս, Արտասարդեան հրապար.* № 7. **Հեռախօս № 29.**

*Պոստի հասցէն.*—Тифлисъ, „Амбаваберъ". Tiflise, Rédaction du journal „Hambavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝** *տողին* **10** *կոպ.*

*Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերից։*

*Տպագրելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման։*

*Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։*

*Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ։*

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ





### *ՕՐՈՒԱՅ ՉԱՐԻՔԸ—ԿԵԱՆՔԻ ԹԱՆԳՈՒԹԻՒՆԸ.*

Laissez faire,
Laissez passer.

*Ներկայ համաշխարհային պատերազմը բացի իր միւս բազմաթիւ և ծանր հետևանքներից առաջ բերեց և համաշխարհային թանգութիւն կեանքի։*

*Ռուսաստանը, որ միշտ յայտնի է եղել իր կենսական մթերքների առատութեամբ, որը մինչև պատերազմը լի ու լի բաւականութիւն էր տալիս ոչ թէ միայն իր հարիւր ութսուն միլիոն ազգաբնակութեան, այլ և արտահանում էր մեծ քանակութեամբ ապրանքներ, այսօր նա էլ գտնւում է տագնապի մէջ թանգութեան պատճառով։*

*Կեանքի թանգութիւնը խեղդում է և ճնշում մարդկանց։*

*Չը կայ քաղաք, չը կայ գիւղ, որտեղ ժողովուրդը ճնշուած չը լինի թանգութիւնից։*

*Ամենուրեք և ամենքից լսւում է դժգոհութիւն և հառաչանք հացի և այլ կենսական գլխաւոր պիտոյքների թանգութեան առթիւ։*

*Կան տեղեր, շրջաններ, ուր ժողովուրդը սկսել է դաշտերում փնտռել արմատներ և խոտեր իր քաղցը յագեցնելու։*

*Միմիայն թանգութիւնը չէ, որից նեղւում է ժողովուրդը։*

*Ունեւոր դասակարգն անգամ նեղութիւն է զգում. նա էլ բողոքում է, որովհետև հնար չունի շատ անգամ ստանալու շուկայում կարևոր կենսական պիտոյքներ հացից սկսեալ։*

*Սարսափելի թանգութեան հետ կապուած է և կեն-*

սական մթերքների պակասումը շուկայում. երբեմն նոյն իսկ կատարեալ անհետացումն որոշ իրերի։

Եւ եթէ մինչև պատերազմը լինում էր կենսական գլխաւոր մթերքների նուազումն, այդ նկատւում էր միայն որոշ շրջաններում և մեծ մասամբ ձմեռուայ վերջը կամ գարնանը։

Իսկ այսօր, երբ դեռ աշնան սկիզբն է, երբ դեռ շատ տեղերում բերքերը չեն հաւաքուած վերջացած, զգալի է արդէն, մինչև իսկ Ռուսաստանի հացառատ շրջաններում, պակասութիւն և նեղութիւն։

Իսկ Անդրկովկասի դրութիւնը այդ կողմից արտակարգ ծանր է։

Անդրկովկասը սովորական ժամանակն էլ միշտ հացի պակասութիւն է ունեցել և իր այդ պակասը լրացրել է Հիւսիսային Կովկասից կամ Ռուսաստանի այլ տեղերից։

Երևանի պէս պտղաբեր նահանգն անգամ ամեն տարի միջին թուով Ռուսաստանից ստանում էր մօտ երկու միլիոն պուդ միայն հացահատիկ և ալիւր։

Ներկայումս այդ պակասի լրացումն առանձնապէս անկարելի է դարձել։

Կեանքի թանգութիւնը, իբրև մի մեծ հասարակական և բարդ երևոյթ, շատ պատճառներ ունի, որոնք մեծ մասամբ կապուած են պատերազմի հետ։

Պատերազմը, կլանելով մեծ քանակութեամբ աշխատաւոր ձեռքեր, բնականաբար ազդում է ցանքսերի նուազման վրայ, որով և պակասում է բերքը։

Պատերազմը, ծառայցնելով երկաթուղին գլխաւորապէս իր կարիքների համար, զգալի կերպով պակասեցնում է կենսական մթերքների ներմուծումը քաղաքներ և այլ կենտրոնատեղեր։

Պատերազմը ստեղծում է բազմաթիւ կարիքներ, որոնց լրացումը պահանջում է դրամանիշերի քանակը աւելացնել։ Ամեն մի պատերազմող կառավարութիւն ստիպուած է լինում հանել մեծ քանակութեամբ թղթադրամ, որը շուկայում անմիջապէս բարձրացնում է մթերքների և առհասարակ վաճառուող իրերի գինը։

Գները օր օրի վրայ սկսում են բարձրանալ աւելի և աւելի։

Ստեղծւում է լուրջ դրութիւն։

Որպէս զի վերականգնի բնական կեանքը, որպէս զի ժողովուրդի դրութիւնը փոքր ինչ թեթևանայ, մարդիկ դիմում են զանազան միջոցների, որոնցից գլխաւոր տեղը բռնում է սակագին նշանակելը թէ արդիւնաբերողի, թէ ներմուծողի և թէ շուկայում վաճառ հանողի մթերքների համար։

Սակայն չը նայած այդ ուղղութեամբ կատարուող եռանդուն աշխատանքներին մեզանում, դարձեալ չէ նկատւում ոչ աժանութիւն և ոչ էլ մթերքների առատ ներմուծումն։

Աւելի շուտ նկատւում է հակառակը։

Օր ըստ օրէ կեանքը շարունակում է թանգանալ, գները առասպելական չափերի են հասնում, ապրանքների ներմուծումը պակասում է։

Ունևորը, ի հարկէ, կարող է դիմանալ, բայց չունևորը և միջին դասակարգը այս ծանր մթնոլորտում տանջւում ու մաշւում է։

Ձեռք առնուած միջոցները, չը նայած իրենց բարի նպատակին, ունեն մի մեծ բացասական կողմ. այն է՝ ոչնչացրել և անհետացրել են անհատական եւ խմբակցական նախաձեռնութիւնը, որը միշտ եղել է եւ կը մնայ փրկարար եւ ստեղծագործող։

Ահա այժմ էլ հարկաւոր է այս ծանր կացութիւնից դուրս գալու համար ազատութիւն տալ անհատական խմբակցական նախաձեռնութեան, դէթ մթերքներ արդիւնաբերողներին ու ներմուծողներին, թողնելով սակագինը, ինչպէս եղել է և առաջ, միմիայն խանութներում վաճառուող կենսական մթերքների համար։

Այժմեան լայնածաւալ սակագինը անհետացրել է վաճառողների մրցումը, որ աւելի ուժեղ և դրական կերպով զսպում է արտադրողների և առևտրականների ագահութիւնը։

Երկիւղ կրել թէ վաճառականները, զգալով իրենց ազատ այժմեան սակագնից, կարող են հարստահարել ժողովուրդին — անհիմն է, որովհետև մրցումն անխուսափելի կը լինի, իսկ մրցումը գների ամենալաւ կանոնաւորողն (ռեգուլեատոր) է։

Իսկ թէ դէպք լինի, որ մի խումբ վաճառականներ պայմանաւորուեն արհեստական կերպով բարձրացնելու գները, դրանց դէմ կան քրէական օրէնքներ, իսկ այդ օրէնքների սպառնացող պատիժը կը զսպի նրանց յանցագործութեան ճանապարհից հեռու կանգնելու։

Ազատեցէք ապրանքների ներմուծումը արգելքներից, կանոնաւորեցէք ճանապարհների հաղորդակցութիւնը, այն ժամանակ շուկաները կը լցուին ապրանքներով, իսկ մրցումը կ'իջեցնի գները, և տառապող ժողովուրդը ազատ շունչ կը քաշի։

Այս է թելադրում մեզ տրամաբանութիւնը ու կեանքի փորձառութիւնը։

Եւ այս ճշմարտութիւնը վաղուց ընդունուած է քաղաքատնտեսագիտութեան մէջ հետևեալ բանաձևով «Laissez faire, Laissez passer»։

Մ. Յ.

## Ներքին տեսութիւն

### ՎՐԱՑԱԽՕՍ ՀԱՅԵՐԻ ՀԱՐՑԸ

Մինչդեռ ներկայ պատերազմի պատճառով հայութեան մի խոշոր հատուածը զոհ է գնում թիւրքական գազանութիւններին, մինչդեռ հայ ժողովուրդը հսկայական զոհերի ու կարիքների բեռան տակ տնքում է այս վայրկէնիս, կան խոշոր թուով հայ հատուածներ էլ, որոնք գտնւում են ապազգայնացման վտանգի տակ։

Վրաստանի խորքերում բնակուող մեծ թուով հայերը մոռացել են իրենց ազգային լեզուն. Գորուայ, Սղնախի, Թելաւի, Թուեթայիսի շրջաններում ապրող հայութիւնը խօսում է այժմ

վրացերէն, թէև իր դաւանանքով, ազգային աւանդութիւններով իրեն հայ է զգում։

Մի քանի ամիս առաջ վիրահայերի հարցը հրապարակ դըրուեց. հայ մամուլում զանազան միջոցներ առաջարկուեցին այս ու այն կողմից, շեշտեցին այն հանգամանքը, որ անպատճառ պէտք է ազդու և օգտակար ձեռնարկների դիմել՝ հայախօսութիւնը աւելի լայն և աւելի հիմնաւոր կերպով տարածելու համար օտարացած շրջաններում։

Միջոցներից մէկը վրացերէն հայկական թերթի հրատարակութիւնն էր «Սոմէխթա ցխովրէբա» (Հայկական կեանք) վերտառութեամբ։

Այդպիսի թերթի հրատարակութիւնը մեր կարծիքով այնքան էլ օգտակար չի կարող լինել հայախօսութեան տարածման տեսակէտից, որովհետև այս աւելի և աւելի պիտի արմատացնի վրախօսութիւնը և մեռցնի հայերէն լեզուն սովորելու փափագը։

Թէև այդ թերթը կարող է վիրախօս հայերին ծանօթացնել հայկական կեանքը և ազատ պահել նրանց վրացերէն գոնեա հայոց դէմ յարձակուող թերթերի ընթերցանութիւնից, որոնք բացասական դիրք բռնելով մեր դէմ, կարող են յոռի տրամադրութիւններ ստեղծել և զարգացնել։ Պէտք է նկատի ունենալ նաև այն հանգամանքը, որ վիրախօս հայերի այն մասը, որ լրագիր է կարդում, արդէն որոշ չափով ծանօթ է ռուսաց լեզուին և կարդում է ռուսերէն լրագրեր, այնպէս որ վիրատառ թերթը այնքան էլ չի կարող լայն շրջանների մէջ տարածուել և հոգեբանական հիմնական փոփոխութիւններ առաջ բերել։

«Արևում» տպագրուած Գիսակի յօդուածից տեղեկանում ենք, որ Թիֆլիսի քահանաների մէջ կազմուել է մի յանձնախումբ, որ նպատակ է դրել դպրոցներ բանալ օտարախօս վայրերում. արդէն այդ ուղղութեամբ ձեռնարկներ եղել են վիրախօս մի քանի գիւղերում։

Դպրոցների թիւը բազմացնել օտարախօս վայրերում—ամենագլխաւոր և ամենից օգտակար ձեռնարկ կարող է լինել ներկայումս. որովհետև դպրոցի միջոցով է, որ մայրենի լեզուն հիմնաւոր կերպով տարածւում ու արծարծւում է նոր սերնդի մէջ և դրա հետ զուգահեռաբար զարթնում ու բիւրեղանում են ազգային զգացումներն ու տենչանքները։

Բայց դպրոցները առանց եռանդուն ու գաղափարական ուսուցիչների, շատ քիչ դեր կարող են խաղալ. մանաւանդ այն շրջաններում, ուր վրացերէնն այնքան խոր արմատ է ձգել հայ ընտանիքների և երեխաների մէջ։

Եռանդուն ուսուցիչը կարող է յաղթել այդ դժուարութիւններին և ոչ միայն դպրոցի հոգին ու շարժիչ ոյժը հանդիսանալ, այլ և շփուելով մօտիկից տեղական հասարակութեան, կապ պահպանելով հայ ընտանիքների հետ՝ կարող է տնտղել նրանց և ազգային զգացումներով տոգորել։

Վրաստանի հայ հոգևորականութիւնը կարող էր աւելի մեծ և ազդեցիկ դեր խաղալ հայախօսութեան տարածման գործում։ Այդ տխուր երևոյթը պիտի բացատրել նրանով, որ հոգևորականների մեծ մասը գրեթէ ծերացած ու զառամած են, որոնք այդ օտարացնող միջավայրում ծնած ու երկար ժամանակ շրջած ու գործած լինելու համար մեծ չափով ենթարկուել են տիրող սովորութիւններին։ Անշուշտ կան և բացառութիւններ, որոնք եռանդով գործում են և աշխատում օգտակար լինել։

Սակայն աւելի զգալի է երիտասարդ ու եռանդուն ուսուցիչների կարիքը, որոնց թիւը դժբաղդաբար ներկայ թանգութեան և այլ պատճառների շնորհիւ շատ սակաւ է վիրախօս շըրջաններում։ Մի քանի վայրերում սակայն հայախօսութեան տարածումը լաւ հիմքերի վրայ է դրուած, ինչպէս օրինակ Գորիում, Սուրամում են։

Գորուայ նման մի չափազանց օտարացած վայրում և մի շարք խոչընդոտներին հակառակ—որոնց մասին թերևս խօսենք պատեհ առթիւ—գործում է ուսուցչ. խումբը ղեկավարութեամբ Գ. Յովհաննիսեանի, որ մի եռանդուն և գաղափարական երիտասարդ է։

Որոշուած է Գորիում հիմնել գիշերային դասընթացներ, հայերէն ընթերցանութիւն, գրական երեկոներ, որոնք անցեալ տարի մեծ յաջողութիւն ունեցան այնտեղ։

Լաւ կը լինէր, որ միւս վայրերի ուսուցչութիւնն ևս օրինակ առնէր այս և օգտակար ձեռնարկներից և չգոհանար միմիայն դպրոցով։

Իսկ մեր պատկառելի անցեալ ունեցող Կ. Հ. Բ. Ը-թիւնը շատացնէր վրացախօս հայոց մէջ իւր դպրոցների թիւը, հաստատէր իւր ճիւղերի օգնութեամբ ընթերցարաններ ու գրադարաններ, տարածէր դիւրամատչելի գներով գրքեր, թերթեր և հրատարակութիւններ ժողովրդի լայն խաւերում։ Ընկերութիւնը կարող է նաև մանկապարտէզներ ու նախակրթարաններ բաց անել, որոնք միայն հիմնաւորապէս կարող են վիրախօս հայ երեխայի լեզուի և արտասանութեան օտար շեշտերը փոխել և հայ լեզուն հիմնաւորել, այնպէս որ, երբ տարրական դպրոցը վերջացնող հայ մանուկը պետական դպրոցներ մտնի, դիւրաւ չմոռանար իր մայրենի լեզուն և չենթարկուէր շրջապատի օտարացնող ազդեցութեան։

Առանց այն էլ մեր ազգային դրամագլուխը կոտորածների պատճառով մեծ կորստի է ենթարկուել, եթէ մենք ոյժ չունենանք մեր ֆիզիքական բազմաթիւ կորուստները փրկելու, կարող ենք սակայն կուլտուրական ապազգայնացող հատուածները պահպանել և համախմբել ապագայում։

Հայորդի

---

## ԿԱՆԱՆՑ ԲԺՇԿԱԿԱՆ ՄԱՍՆԱՃԻՒՂ (ՖԱԿՈՒԼՏԷՏ)

Հոկտ. 2-ին Արտիստիկ թատրոնում տեղի ունեցաւ կանանց բժշկական բարձրագոյն դասընթացքների հանդիսաւոր բացումը։

Հանդէսին ներկայ էին Կովկասի Փոխարքան և պետական ու հասարակական նշանաւոր պաշտօնեաներ ու գործիչներ։

Մաղթանքից յետոյ դասընթացքների տեսուչ ուսուցչապետ Ֆ. Վ. Բլագովիդովի առաջարկութեամբ դահլիճը թնդում է «ուռա» աղաղակներով և ազգային հիմնի ձայներով Թագաւոր Կայսեր պատուին։ Նոյն ցոյցն արուեց Փոխարքայի պատուին, իսկ Մեծ Իշխանուհու պատուին երգուեց «Մրաւլժամիէ»-ն։

Փոխարքան ողջունեց կանանց բժշկական մասնաճիւղի բացումը հետևեալ խօսքերով.

«Սրտանց շնորհաւորում եմ կանանց դասընթացքների հիմնադիրներին և խորհրդին՝ բժշկական մասնաճիւղի բացման առթիւ. հաւասարապէս շնորհաւորում եմ նաև նրա ապագայ ուսանողուհիներին։ Ուրախ եմ, Կովկասի համար անհրաժեշտ և յոյժ օգտակար այս գիտական հիմնարկութեան բացմամբ, որի նպատակն է պատրաստել կին-բժիշկներ, որոնք ծառայելով ազգաբնակութեանը՝ արժանանան ընդհանուրի համակրանքին և շնորհակալիքին։ Բոլոր սրտով ցանկանում եմ ձեզ, բժշկական մասնաճիւղի առաջիկայ ուսանողուհիներիդ, լիակատար յաջողութիւն ձեր զբաղմունքների և արագ աւարտելու, որպէս զի ձեր գիտութեան և Աստծու օգնութեամբ կարողանաք ծառայել բժշկութեան կարօտ երկրի ազգաբնակութեանը»։

Փոխարքայի խօսքերն ընդունուեցին երկարատև ծափահարութիւններով. դահլիճը նորից թնդաց «ուռա» աղաղակներով, որից յետոյ ուսուցչապետ Ֆ. Վ. Բլագովիդովը խնդրեց Փոխարքային իրենց ուրախութեան և շնորհակալիքի արտայայտիչը լինել Թագաւոր Կայսեր առաջ։

Փոխարքայի և Մեծ Իշխանուհու հեռանալուց յետոյ՝ Կովկ.

Ուսումն. շրջանի հոգաբարձու Ռուդոլֆի նախագահութեամբ տեղի ունեցան շնորհաւորանքներ։

Շնորհաւորանքներն սկսելուց առաջ նախագահի առաջարկութեամբ յոտնկայս յարգուեցին դասընթացքների հիմնադրութեան սկզբնական շրջանում աշխատողների յիշատակները՝ յանձինս իշխ. Բեհբութեանի, որը ամենից շատ ջանք է թափել Կովկասում բարձրագոյն դասընթացքներ հիմնելու համար։

Հիմնադիրներից խօսեցին՝ ուսուցչապետներ Բլագովիդով, Ս. Ա. Սողոմոնեան, Ս. Մ. Վիլլեր և բժշկ. մասնաճիւղի տեսուչ բժշկ. Յարութիւնեան։

Այնուհետև շնորհաւորեցին՝ Քաղաքային վարչութեան կողմից Արղութեան-Երկայնաբազուկ, Քաղաքային հիւանդանոցների բժիշկների կողմից բժ. Վեսելովզորով, Քաղաքների Միութեան Կովկ. բաժանմունքի հիւանդանոցների բժիշկների կողմից բժ. Պոնդոյև, Թիֆլիսի միջնակարգ դպրոցների ծնողական ժողովների կողմից բժ. Ա. Շխեան և հրէայ ազգաբնակութեան կողմից ռաբբի Մարկուս։ Շնորհաւորանքներ եղան նաև Կովկ. Կայսերակ. բժշկ. ընկերութիւնից, Նաւթլուղի զինուորական հիւանդանոցից, Թիֆլիսի լաբորատորիայից, Միքայէլեան հիւանդանոցից են։

Ուշ լինելու պատճառով կրճատուեց շնորհաւորողների ցուցակը և կարդացուեցին ստացուած բազմաթիւ հեռագիրներից միայն կարևորները։

Կանանց բժշկական բարձրագոյն դասընթացքները Կովկասում մեծ զարկ կարող են տալ գիտութեան ժողովրդականացման, մանաւանդ իգական սեռի մէջ, որն այդպիսով կարող է աւելի և աւելի յառաջադիմել՝ զարգացնելով իւր մտաւոր և իմացական հորիզոնները։

Գիտական-բժշկական զէնքերով զինուած կանայք հնարաւորութիւն պիտի ունենան այսուհետև տրամադրել իրենց ուժերը ժողովրդի ֆիզիքական տանջանքների և հիւանդութիւնների առողջացման ու բարելաւման համար։

Այդ կերպով ոչ միայն հասարակաց առողջութիւնը ապահովուած կը լինի, այլև կինը աւելի ևս դիւրութիւն և հնարաւորութիւն կունենայ շեշտել և ապահովել իւր ազատագրութեան խնդիրը։

X

## ԵՐԵԽԱՆԵՐԻ ԸՆԹԵՐՑԱՆՈՒԹԵԱՆ ԱՌԹԻՒ

Ես ցանկանում եմ մի քանի խօսքով շօշափել երեխաների ընթերցանութեան հարցն ընդհանրապէս, իսկ հայոց լեզուովը մասնաւորապէս։ Եթէ Ռուսաստանի կուլտուրական կեանքը այս կողմից շատ պակասներ ունի, որչափ ուրեմն այդ աւելի պայծառ նկատելի են հայոց կեանքի իրականութեան մէջ։

Իսկապէս երեխաների ընթերցանութեան հոգսը պէտք է տանեն դպրոցները, ուր բաւարարւում են երեխայի հոգևոր պէտքերը. սակայն մեր մանկավարժները կամ շատ ծանրաբեռնուած են դասերով կամ բոլորովին անտարբեր են դէպի կրթական գործը, ուստի և հարկաւոր է դիմել կողմնակի օգնութեան։ Այդ օգնութիւնը կարող է տալ մանկական գրադարանը, որ Ռուսաստանում նոր երևոյթ է։

Ցաւօք սրտի մինչև այժմ գրադարանապետների վրայ նայում են ինչպէս մի մեքենավարի վրայ, որի պարտաւորութիւնն է գրքեր տալ և ստանալ. մի պարտաւորութիւն՝ որ կարող է կատարել քիչ ու շատ կրթուած անձ։ Մինչդեռ գրադարաններում աշխատողների, մանաւանդ ժողովրդական և մանկական գրադարանների գործունէութիւնը կուլտուրական կողմից շատ արդիւնաւէտ է, որովհետև դեռ հարկաւոր է լինում ղեկավարել իւր յաճախորդների ընթերցանութիւնը։

Ես կխօսեմ միայն մանկական գրադարանների մասին։ Այդպիսի մի օրինակելի կարգաւորուած գրադարան Մոսկուայում Բերեզնիկովինն է, որին կից կայ մի մասնաժողով, որ հետևում է հրապարակի վրայ գտնուող գրքերի բոլոր նորութիւններին, քննում է այդ գրքերը, կազմում քննադատութիւն և հրատարակում մի քանի տարին մի անգամ գրացուցակներ։ Գրքերի մեծ մասը հանւում է, իսկ փոքր մասը միայն առաջարկւում ընթերցանութեան համար։

Ինչպէս երեխաներին, այնպէս և հասակաւորներին հարկաւոր է իսկական գեղարուեստական գրուածքներ, երկեր և ոչ թէ խղճուկ նմանողութիւն կամ անտաղանդ բարոյակրթական պատմուածք, որը ոչինչ չէ ասում մանկան մտքին և հոգուն։

Ի հարկ է, մանկական գրականութիւնն ևս ունի իր առանձին պահանջները։ Գրութեանց ոճը և գործողութիւնը պէտք է գերակշռեն տրամադրութեան վրայ։ Մանուկների մէջ թանձրացեալը (կոնկրէտը) միշտ գերակշռում է վերացականին։ Այս կողմից երիտասարդ սերնդի մէջ մեծ յաջողութիւն ունեն անգլիացի գրողները։

Գրադարանապետները ոչ միայն պիտի ընտրեն ընթերցանութեան նիւթը, այլ և գիտենան դասաւորել այն։ Մանուկներին չպէտք է ճնշել գրքեր ընտրելու գործում, բայց և պէտք չէ թողնել նրանց առանց հսկողութեան։ Փոքրիկ ընթերցողի զարգացման աճումը և անհատական առանձնայատկութիւնները այդ դէպքում շատ մեծ դեր են կատարում։

Սովորաբար գրադարանը բաժանւում է մի քանի բաժանմունքների և մեծ մասը բռնում է գեղարուեստական (беллетристика) բաժինը։ Վերջինը իւր հերթին բաժանւում է մանր բաժանմունքների—տխուր և ուրախ բովանդակութեան գրքեր, դպրոցական կեանքից պատմուածքներ, արկածներ և այլն։ Սոյնպէս կարելի է բաժանման ենթարկել և մնացած բաժինները։ Մեծ տարածութիւն ունի ամեն տեղ գեղարուեստական բաժինը, յետոյ պատմական վէպերը, վէպիկները և ճանապարհորդական նկարագրութիւնները։

Գիտական գրքերը կարդացւում են շատ քիչ ախորժակով, որը բոլորովին հասկանալի է։ Երեխաները առանց մեծերի միջամտութեան, շատ դժուարութեամբ են ըմբռնում գիտական նիւթերը։

Մի քանի գրադարաններում այդ պակասը լրացւում է կազմակերպելով ընթերցանութիւն կամ զրոյցներ։ Այս վերջինները կատարւում են պատկերներ ցոյց տալով կամ դիւթական լապտերներով։ Կենդանի խօսքը բարերար ազդեցութիւն է անում երեխաների վրայ. նրանք սկսում են հետաքրքրուել մինչև այժմ իրենց համար անծանօթ աշխարհով և ձգտում են հասկանալ անծանօթ նիւթը։

Սեռի տարբերութիւնը նոյնպէս նշանակութիւն ունի գրքերի ընտրութեան ժամանակ։ Ցաւօք սրտի պէտք է խոստովանել, որ տղաներն աւելի հետաքրքրութիւն են ցոյց տալիս, քան աղջիկները, և նրանց ճաշակները տարբեր են։ Տղաներին աւելի գրաւում են արկածները և ընդհանրապէս այնպիսի գրուածքներ, ուր հերոսները կեանքի կռւում ներգործող դեր են կատարում։ Եւ այդ է պատճառը, որ նրանք հետաքրքրութեամբ կարդում են Ժիւլ Վերնի, Կուպերի և պատերազմական պատմուածքներ։ Աւելի բարձր հասակում տղաները արդէն սկսում են վերցնել գիտական գրքեր։ Իսկ աղջիկներին հետաքրքրում է չորս պատերի միջի կեանքը, ուր կայ ընտանեկան անդորրութիւն և ուր կարելի է խոհերի մէջ խորասուզուել։

Բացի այդ սոքա աւելի սիրում են թեթև ընթերցանութեան գրքեր քան տղաները։ Աղջիկները կարդում են նոյնպէս պատմական գրքեր, իսկ սարսափում կենդանաբանական գրուածքներից։ Այդ տեսակ ճաշակների տարբերութիւնը կարելի է բացատրել ոչ թէ բնութեան առանձնայատկութիւնների տուեալներով, այլ կրթութեամբ։ Մենք աւելի թեթևամտութեամբ ենք վերաբերւում

աղջիկների հոգևոր հարցերին և պատուաստում ենք նրանց մէջ աւելորդ զգայականութիւն (сантиментальность) և կրաւորական վերաբերմունք, այն ինչ շատ յաճախ խրախուսում ենք տղաների կոպտութիւնը, շփոթելով այդ իսկական տղամարդութեան հետ։

Եթէ սակաւ է ռուսերէն լաւ մանկական գրքերի թիւը, աւելի ևս սակաւ է հայ լեզուով։

Ինքնուրոյն աշխատութիւններից աւելի շատ կարդացւում են Աղայեանի, Թումանեանի և Բամալեանի հէքեաթները։ Հասակաւոր երեխաները պահանջում են պատմական վէպեր և դասական գրուածքներ—Աբովեանի, Րաֆֆու և այլոց։ Իսկապէս հայոց դասական գրուածների մեծամասնութիւնը մատչելի է միայն 17—18 տարեկան հասակ ունեցողներին։

Թարգմանական գրականութիւնը գերակշռում է ինքնուրոյնին, սակայն անհրաժեշտ է շատ զգոյշ վերաբերմունք, որովհետև շատ անգամ պատահում են այնպիսի թարգմանութիւններ, որոնք մայրենի լեզուի դէմ մեղանչում են։

Վերջին ժամանակներս հայոց բանդէտների (ինտելլիգենցիայի) մէջ ևս զարթել է հետաքրքրութիւն դէպի մանկական գրականութիւնը։

Այսպէս օրինակ «Կարևոր Գիտելիքներ Տարածող Ընկերութիւն» գրադարանում կայ առանձին մանկական բաժին։

Այդ գրադարանը գտնւում է Հաւլաբարում, ուր մեծ հաճոյքով այցելում են աղքատ դասակարգի որդիքը։ Այդ գրադարանի կառավարչուհին շատ սիրով կպած է գործին և գրքեր տալիս միշտ հարցափորձ է անում փոքրիկներին նրանց կարդացած գրքերի մասին։ Հասարակաց գրադարաններից հայերէն գրքեր պահանջում են աւելի քիչ քանակութեամբ, որի պատճառը գլխաւորապէս ծնողներն են, որոնք երկիւղ են կրում, թէ հայերէն գրականութեամբ հրապուրուելով կարող են դժուարանալ պետական լեզուն սովորելու։ Պէտք է այդ ուղղութեան դէմ կռուել։

Սակայն վերոյիշեալ բոլոր նկատողութիւնները մի կաթիլ ջուր է ծովի առաջ։ Հարկաւոր է աւելի ընդարձակ և լուրջ գործունէութիւն այդ շրջանում։

Նախ և առաջ կան բազմաթիւ գեղեցիկ երկեր, որ ցանկալի է հայերէն թարգմանել։ Այդ գրքերից շատերը պէտքական կը լինեն դպրոցների համար,- ինչպէս օրինակ պատմութեան, աշխարհագրութեան և բնական գիտութեանց ժողովածու ծաղկաքաղներ (Хрестоматія)։

Մեր հայեացքները ակամայ դարձնում ենք դէպի մեր մանկավարժները, որոնք մեր բանդէտների (ինտելլիգենցիայի) գլխաւոր տարր են և որոնց արդէն աւելի մօտ է այդ գործը քան մի ուրիշին։

Մի խումբ անձանց մէջ արդէն միտք է ծագել կատարելագործելու գրադարանները հայոց և այն էլ գլխաւորապէս գաւառական դպրոցներում։ Աւելի կամ պակաս Թիֆլիսում աշակերտութիւնը ապահովուած է գրադարան-ընթերցարաններով։

Ապագայ ընկերութիւնը մտադիր է դպրոցների համար կազմել փոքրիկ գրադարաններ հայրենի և օտար ընտիր գրողներից և ուղարկել դպրոցներին։ Էլ աւելի լաւ կը լինի, եթէ այդ ընկերութիւնը ժամանակ առ ժամանակ կազմակերպի դասախօսութիւններ՝ ուսուցիչներին այդ նոր գործին և մանկական գրադարանների արժէքը ծանօթացնելու, այլապէս այդ նոր գործի լաւ սկզբնաւորութիւնը կարող է միայն փչանալ անգիտակ ղեկավարների ձեռքով։

Էլչէտ

## ՀԱՅ ՓԱԽՍՏԱԿԱՆՆԵՐԻ ՎԻՃԱԿԸ ԿԱՐՆՈՒՄ

Այս սեպտեմբերի 26-ին, «Կարնի հայ փախստականների Կոմիտէի» ատենապետ Գ. Գողեանի Հ. Կենտ. Կոմիտէին ուղարկուած զեկուցագրից քաղում ենք հետևեալ կարևոր տեղեկութիւնները.

Կարնոյ հայ գաղթականների վիճակը խիստ աննախանձելի է. կենսամթերքները գնալով թանգանում են, մանաւորապէս հացը, որ վերջերս չի ճարւում։ Անհրաժեշտ է, որ Կովկասից շուտով որոշ քանակութեամբ ալիւր հասցնէք մեզ։ Տեղիս Ցանձնաժողովը (Կոմիտէն) մի քանի մարդ ուղարկել է արդէն շրջակայ վայրերից կենսամթերք ձեռք բերելու։

Երզնկայից ու այլ շրջաններից ամեն օր նորանոր գաղթականներ են գալիս՝ գրեթէ մերկ. այս առթիւ Ցանձնաժողովը հայոց եկեղեցուց վերցրած ապրանքները սկսաւ բաժանել. բաժանուած է մօտ 630 ձեռք զգեստ։ Բայց Կարնոյ ձմեռը շատ խիստ լինելուն համար, տաք շորի մեծ կարիք կայ։

Նոր եկող գաղթականների տեղաւորման համար մեծ դժուարութեանց հանդիպեցինք. սրանից մի քանի շաբաթ առաջ կարգադրութիւն եղաւ, որ այն թիւրքերը, որոնք հայերի տներում են բնակւում, դուրս գան. թէև մի քանի օրուայ ընթացքում մի շարք տներ դատարկուեցին, բայց մեզ անյայտ պատճառներով հրամանը յետ առնուեց. պէտք եղած տեղ դիմումներ արինք թէև, բայց դեռ պատասխան չըկայ։ Բնակարանի և սննդի չգոյութիւնը պատճառ դարձաւ հիւանդութիւնների տարածման, որոնք բարեբաղդաբար վարակիչ չեն։

Ստացուած տեղեկութիւնների համաձայն՝ ամեն օր Դերսիմից Երզնկա են գալիս նորանոր գաղթականներ՝ քրդերի առաջնորդութեամբ. մի օրուայ ընթացքում 75 փախստական արդէն հասել են։ Այդ փախստականները հետզհետէ Կարին են տեղափոխւում։ Սեպտ. 14-ից մինչ այսօր 796 հոգի, որոնցից 112 որբ հասած են տեղս։ Որբերին Մոսկուայի հայկական Կոմիտէն է խնամում։ Նոր ճանապարհուել են 52 հոգի։ Առաջին կարաւանը, որ բաղկացած էր 424 հոգուց, հետևեալ շրջաններից են.

Խարբերդի շրջանից 24 հոգի, Խոչաթինից 17, Չարսանճաքինից 130, Բաբերդինից 10, Չմշկածագինից 111, Բէյրինից 53, Տրապիզոնինից 24, Շ. Գարահիսարինից 11, և զանազան վայրերից 44. ընդհ. գումարը 424 հոգի։

---

## ՏՐԱՊԻԶՈՆԻ ՀԱՅԵՐԸ

Հայկ. Կենտ. Կոմիտէին օգոստոսին ուղարկուած երկու նամակից քաղում ենք հետևեալը.

Տեղիս Կոմիտէն, որ նոր կազմուած էր և պիտի հոգար փախստականների գործերը, Ալէքսան Գալէմքարեան անունով մի փաստաբանի միջամտութեամբ փակուեցաւ մեզ համար բոլորովին անյայտ պատճառներով։ Կոմիտէի փակուելով գաղթականական գործերը երեսի վրայ մնացին, այնպէս որ կոտորուած ու տարագրուած հայերի գոյքերն ու կալուածները մնացել են բախտի խնամքին։

Հայերի խանութներում մնացող ապրանքները կողոպտուեցին, իսկ պարապ մնացած տները քանդւում են։ Ազգային կալուածներն, որոնք կարող էին տարեկան 15—20,000 ռ. վարձք բերել, մնացել են անտէր, մինչդեռ վարձքերի պայմանաժամը լրացած լինելով դրամ գանձող չկայ։

Կոմիտէի անունով փոխագրուած դրամներ կան, որ ստանալու հնար չունինք։ Քաղաքների Միութիւնը առանց Կոմիտէից վկայական ստանալու աղքատ գաղթականներին նպաստ չի տալիս. զանազան տեղերից այստեղ եկողները իրենց կալուածներին

ռէր չեն կարողանում դառնալ, առանց վկայականի, մինչդեռ Կոմիտէն փակուած լինելով հնար չունի վկայական տալու։

Հայր Մելեանը հիւանդութեան պատճառով չը պիտի կարողանայ գործերի գլուխն անցնել, ուստի յանուն ազգային շահերի ուղարկեցէք մի լիազօր, որպէսզի գործերը մտնեն կանոնաւոր ընթացքի մէջ։

Հ. կ. Կոմիտէն իր մի մասնաւոր նիստում ընտրելով լիազօր՝ ուղարկեց Տրապիզոն

---

## ԳՐԱԴԱՐԱՆ-ԸՆԹԵՐՑԱՐԱՆՆԵՐ

### «ԹԷ ԻՆՉՊԷՍ ՊԷՏՔ Է ԳՐԱԴԱՐԱՆ-ԸԹԵՐՑԱՐԱՆՆԵՐ ՀԻՄՆԵԼ ԵՒ ԿԱՌԱՎԱՐԵԼ»

(Կազմեց Կ. Հ. Բ. Ը. Գրադարանապետ Ա. Փարեմուզեանց, հրատարակութիւն Բարեգ. Ը-թեան)։

Որովհետև Կ. Հ. Բ. Ը-թեան ճիւղերը, դպրոցները, զանազան հիմնարկութիւններ և անձինք դիմում են Ը-թեան Խորհրդին և խնդրում ցուցմունքներ ու խորհուրդներ տալ, թէ ինչպէս պէտք է գրադարան-ընթերցարաններ հիմնել և կառավարել, իսկ բոլորին գրաւոր լիակատար տեղեկութիւններ և ցուցմունքներ տալու համար առաջ էր գալիս տեխնիքական դժուարութիւններ, ուստի և Խորհուրդը հրատարակելով վերոյիշեալ ձեռնարկը, յոյս ունի, որ բաւարարութիւն կըտայ թէ իրեն դիմողներին և թէ նրանց, որոնք զբաղւում կամ զբաղուելու են գրադարանական գործով։

Գիրքը բաղկացած է 7 մասից. Ա. մասում բացատրւում է թէ ինչ բովանդակութեան և ձևի խնդիր պէտք է գրել գրադարան-ընթերցարան բանալու իրաւունք ստանալու համար, և ռուսերէն լեզուով առաջ է բերած խնդրի ձևը։

Բ. մասը (բաժիններ).

Գրացուցակը պէտք է բաղկացած լինի հետևեալ բաժիններից՝

1) Մանկական-պատանեկական.
2) Գեղարուեստական.
3) Պատմական.
4) Գիտական.
5) Պարբերական հրատարակութիւններ.
6) Զանազան.

Բացատրուած է թէ իւրաքանչիւր բաժնում ինչ բովանդակութեան գրքեր պէտք է զետեղել։

Գ. մասը (գրքերի ցուցակագրելը).

Ի՞նչպէս պէտք է ցուցակագրել գրքերը և դասաւորել իրանց տեղերը։ Իբրև օրինակ առաջ է բերուած Օ. Շմիդտի «Առաջին վիշտ» գրքոյկը։

Դ. մասը (գրացուցակներ).

Ի՞նչպէս պէտք է կազմել գրացուցակները և ինչպէս պէտք է գրքերը այբբենականի վերածել, քարտային սիստեմի և սովորական գրացուցակներ։

Ե. մասը (մատեաններ).

Կահացոյց մատեան, գրացուցակներ, անձնական հաշիւների մատեան, օրահաշիւ և բաժանորդատետրը, սրանց կազմութեան ձևը և այլն։

Զ. մասը (մատեաններ պահելու և գրքեր տալու ձևը).

Բացատրուած է գրքերի ընտրութեան ձևը, պահանջաթերթերի գործածութեան ձևը, գրամների անդորրագրի կազմութիւնը օրինակներով և այլն։

Է. մասը (կանոնադրութիւն).

Առաջ է բերուած Կ. Հ. Բ. Ընկերութեան Թիֆլիսի գրադարան-ընթերցարանի 20 կէտերից բաղկացած կանոնադրութիւնը, որը ընդունելով իբրև ուղեցոյց՝ կարելի է փոփոխել և յարմարեցնել տեղական պայմաններին։

Այս փոքրիկ և արժան գրքոյկի—24 երեսից կազմուած 10 կոպէկ արժողութեամբ—մասին այսքան երկար խօսեցինք, որովհետև մեզնում արդէն շատ ու շատ տեղերում գրադարան-ընթերցարաններ են հիմնուել, բայց տակաւին չգիտեն կարգին ղեկավարել և պահել ու պահպանել։

---

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

Կ. Հ. Բ. Ը-թեան Խորհրդի որոշումները.—

ա) Ի նկատի ունենալով կենսական պիտոյքների անասելի թանգութիւնը և անհրաժեշտ մթերքների գների օր աւուր բարձրանալը, Խորհուրդը որոշեց աւելացնել Ընկ. ծառայողների ռոճիկները կրկին 25%, որը նախկին աւելացրածի հետ կազմում է 50% յաւելումն։ բ) Ըստ միջնորդութեան Կ. Հ. Բ. Ը-թեան Թէլաւի ճիւղի վարչութեան նախագահուհի տ. Օ. Պողոյեանի, տալ տեղի դպրոցում գտնուած պահեստի զինուորների ընտանիքի 37 աշակերտի ուսման վարձ՝ իւրաքանչիւրին 5-ական ռուբլի, ընդամենը 185 ռ.։ գ) Լսելով ուսուցչական ֆոնդի մասնաժողովի արձանագրութիւնը, տալ ֆոնդի գումարներից 1) ուսուցիչ Խ. Բաբայեանին ամսական 35 ռ. մինչև 1917 թ. մարտ ամիսը, 2) ուսուցչուհի օր. Մարիամ Գողալեանին, որը հիւանդ է թոքախտով, տալ ամսական 30 ռուբլի մի տարի ժամանակով. 3) տիկին Աննա Ամիրաղեանի վերաբերութեամբ ժողովել անհրաժեշտ տեղեկութիւններ և 4) ուսուցչուհի Նունէ Խուդադեանի խնդիրը թողնել առանց հետևանքի ֆոնդի կանոններին անհամապատասխան լինելու պատճառով։

դ) Կազմակերպել Ընկերութեան, մանաւանդ ճաշարանի օգտին ժողովարարութիւն, երեկոյթ կամ ներկայացում և այդ առթիւ հրաւիրել հոգաբարձական, ուսուցչական և այլ մարմիններից մի ժողով։ Յանձնել այդ գործի կազմակերպութիւնը խորհրդի անդամներ՝ բժ. Բ. Աղասարեանին, Ի. Յարութիւնեանին և Յ. Շահնազարեանին։

ե) Սարիղամիշի ճիւղի վարչութեան և նրա գործավար Ենգոյեանի մէջ ծագած տարաձայնութիւնները քննելու համար յանձնարարել պ. Սմբատ Պետրոսեան Տէր-Յակոբեանին, խնդրելով քննութեան արդիւնքը ներկայացնել Խորհրդին։

զ) Թէլաւի ճիւղի վարչութեան միջնորդութեան համաձայն տալ Թէլաւեցի Լևոն Մարգարեանին մշտական անդամութեան մրցագիր (ДИПЛОМЪ), որի համար նա ներկայացրել է Թէլաւի ճիւղին սահմանած 100 ռուբլին։

***

Կ. Հ. Բ. Ը-թեան Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է պ. Գասպար Տէր-Մարգարեանից Շրվինանց դպրոցի ներկայ տարուայ դպրոցական առաջին կիսամեակի նպաստը՝ 1,550 ռուբլի։

***

Կ. Հ. Բ. Ընկ. Խորհուրդը շնորհակալութեամբ ստացաւ պ. Յովսէփ Խրիստափորեան Յովսէփեանից ի նպաստ «Համբաւաբեր»ի հրատարակութեան 100 ռ.։

***

Պ. Զաքարիա Արզումանեան Նազարբէգեանը ներկայացնելով Կ. Հ. Բ. Ը-թեան Խորհրդին սահմանեալ հարիւր ռուբլին, խընդրել էր ընդունել իրեն Ը-թեան մշտական անդամ։ Խորհուրդը յարգելով նորա խնդիրը՝ որոշեց տալ նորան մշտական անդամութեան մրցագիր։

***

Կ. Հ. Բ. Ընկ. շնորհակալութեամբ ստացել է Թիֆլիսի ա-

առաջին մասնաւոր գրաւատնից (լոմբարդից) յօգուտ հիւանդանոցի 7 ռ. 96 կ.։

***

Հ. Կ. Կոմիտէի «Մի բաժակ թէյը», որ գտնւում է տ. Շուշանիկ Օգանէզեանի ղեկավարութեան տակ, 1916 թուի սեպտեմբ. 1-ից մինչև հոկտ. 1-ը արդիւնք եղել է 6246 ռ. 17 կ.։ Ծախքը՝ 4135 ռ. 7 կ.։ Զուտ արդիւնք մնացել է 2111 ռ. 10 կ.։

### ԱԶԳԱՅԻՆ ՀԻՄՆԱԴՐԱՄԸ (ՖՈՆԴ)

Հայ. Բարեգործ. Ընդհանուր Միութեան բերան «Միութիւն» ամսաթերթի վերջին համարների (մարտ-ապրիլ և մայիս-յունիս) մէջ տպուած է Պօղոս Նուպար փաշայի նախաձեռնութեամբ կազմուած ազգային հիմնադրամի հաշիւը, որից երևում է, որ մինչև մայիսի վերջը ստացուած են նուէրներ 936,385 ֆրանկ։ Այս գումարից նորին վսեմութիւնը ուղարկել է Ամենայն Հայոց Կաթողիկոսին 488,310 ֆրանկ, իսկ 283,809 ֆրանկ գործադրուել է Թիւրքիոյ տարագրեալների և այլ կարիքների համար։

---

## ՎԵՐՋԻՆ ՀԵՌԱԳՐԵՐ

### ՀԱՅ. ԿԵՆՏՐ. ԿՈՄԻՏԷԻՆ

Սարիղամիշի պահեստապետ Ենգոյեանը հեռագրում է՝ «Կարսի շրջանի գաղթականներին անհրաժեշտ է ալիւր հասցնել. թոյլ տուէք երկու վագոն ուղարկելու մասնաւոր բեռնատարքով (տրանսպորտ)»։ Հեռագրով կարգադրուեց ուղարկել պահանջուած ալիւրը։

### ՊԱՐԵՆԱՒՈՐՄԱՆ ԳՈՐԾԸ

Ընկերութեանս շրջաբերական հարցումներին ստացուած պատասխանների համաձայն, պարենաւորման պահեստներից օգտւում են Գանձակի շրջանում 5,139 գաղթական, Քարվանսարայում 1500, Ներքին-Ախտայի շրջանում 3708, Ղարաքիլիսայում 6000, Ալէքսանդրապոլում 3500, Երևանի պահեստից քաղաքում օգտւում են 17,769 և շրջանում 12,503 գաղթական, Վաղարշապատի շրջ. 10,026, Ղամարլուում 8500, Նոր Բայազիդի շրջ. 3490, Ղարանլուղում 2,600, Ելենովկայում 1301, Բաշ գիւղի (Բասէն) շրջ. 12,000 գաղթական։ Առայժմ տեղեկութիւններ չկան Դիլիջանի, Իգդիրի, Սարիղամիշի, Ալաշկերտի, Վանի և Պարսկաստանի շրջաններից։

—

Ի նկատի ունենալով Ղարսի շրջանից եկող դիմումները— պահեստներ բաց անել գաղթականների համար, որոնց թիւը հասնում է 5—6000-ի, Ընկերութեան պարենաւորման բաժանմունքը գաղթականների գործի գլխաւոր լիազօր գեներալ Թամամշեանի համաձայնութեամբ որոշել է մօտ ապագայում Ղարսում և Տեկոռում բանալ պահեստներ, որի համար նախապատրաստական աշխատանքներ արդէն կատարուած են։

—

Պարենաւորման գործի վերահսկիչներ պ.պ. Վ. Բաղդասարեան, Ի. Հայրեան և Գ. Մարտիրոսեան, որոնցից առաջինը գնացել էր Ղարաքիլիսայի, երկրորդը Սարիղամիշի շրջանի, իսկ երրորդը Երևանի և Գանձակի շրջանների պահեստների գործերը վերստուգելու, վերադարձան։ Նրանց տուած տեղեկութիւնների համաձայն, գործերը այդ շրջաններում տարւում են կանոնաւոր և գաղթականութիւնը բոլորովին գոհ է պահեստների գործունէութիւնից։

—

Պարենաւորման գործի գլխաւոր պահեստը ուղարկել է Աղստաֆա 1,000 ֆտ. թէյ և ուղարկելու է Քարվանսարայի և Դիլիջանի պահեստներին 100-ական փութ, Կովկասի պահեստը 800, որից 300 ֆ. պէտք է ուղարկուի Նոր-Բայազէդի և 100 ֆ. Ղարանլուղի պահեստին։ Ուղարկուած է նաև Գանձակ 500 ֆ., Երևան 1,000 ֆ., Ղարաքիլիսա 500 ֆ., Ալէքսանդրապոլ 1,000 ֆ. թէյ։

---

## ՔՐՈՆԻԿՈՆ

Հոկտ. 1-ին Թիֆլիսի երաժշտական դպրոցի դահլիճում ռուս գրող Ա. Ի. Կուպրինը կարդաց մի դասախօսութիւն հետևեալ ծրագրով՝ «Ռուս գրականութիւնը Պուշկինից մինչև Չեխովը»։ Դահլիճը ծայրէ ծայր լեցուել էր հասարակութեամբ։

***

Հայոց Դրամատիկ ընկերութեան խմբի երկրորդ հերթական ներկայացումը կը կայանայ առաջիկայ երկուշաբթի հոկտ. 10-ին Արտիստիկ թատրոնում։ Խաղալու են «Օթէլլօ», Շէքսպիրի մահուան 300 ամեակի առթիւ։ Օթէլլոյի դերը կը կատարի երիտասարդ արուեստագէտ պ. Վ. Փափազեանը։

***

Մեր թերթի խմբագրութեան անդամ-քարտուղար Ստ. Կանայեանցը, որ ամսիս 1-ին վերադառնալով վերսկսեց իւր պաշտօնը, հրաւիրուած է Բագու Գրասէրների Ընկերութեան կողմից դասախօսելու իւր յայտնագործած հայոց ժողովրդական «Քաջանց տան», այն է Արշակունեաց հարստութեան (դինաստիա) վէպի մասին։ Ինչպէս յայտնի է, ժողովրդական այս նոր վէպը համարեա ամբողջապէս Փաւստոս Բիւզանդի պատմագրութիւնն է ըստ բովանդակութեան, որ սակայն շնորհիւ Ս. Կանայեանցի ուսումնասիրութեան նոր լոյս է սփռում ոչ միայն հայոց պատմութեան շատ մութ և խճճուած խնդիրների, այլև հայ ազգագրութեան վրայ. այսպէս օրինակ ըստ Կանայեանցի մեր «քաջերը» հայոց արքայական տունն է, դևերը Մամիկոնեանք, որ Դ. դարում քրիստոնէութեան շրջանում հայոց նախարարներն ու արքաները բազմակին են եղել, ևն ևն։

***

Սեպտեմբեր ամսուան ընթացքում Կ. Հ. Բ. Ընկերութեան գրադարանից տրուած է կարդալու համար 1,950 կտոր գիրք, որից հայերէն 1,225 և ռուսերէն 725։ Նոյն ժամանակի ընթացքում ընթերցարան են յաճախել 5,525 հոգի, որից 3,150 այր և 2,375 կին։

***

Շուտով Թիֆլիսում լոյս է տեսնելու ռուսերէն մի պաշտօնաթերթ «Вѣстникъ Кавказской Арміи» անունով։

***

Աւճալեան լսարանի շէնքը վերանորոգուած է։ Ժողովրդական թատրոնի բացումն այդ շէնքում կայանալու է հոկտեմբերի 16-ին։

***

Մոսկուայում վախճանուել է Ա. Կովինա անունով մի պառաւ կին, որը իր 2 միլիոն կարողութիւնից $1\frac{1}{2}$ միլիոնը նուիրել է Մոսկուայի քաղաքային ինքնավարութեան այն պայմանով, որ այդ գումարով հիմնուի կանանց համար ապաստարան։

***

Քաղաքագլխի պաշտօնավար վերընտրուել է իշխան Արղութեան-Երկայնաբազուկը, իսկ Վաճառականների աւագ՝ Ի. Տ. Աֆրիկեանը։

***

Թիֆլիսում է գտնւում պետական Դումայի անդամ Մ. Ի.

Պապաջանեանը, որ գաղթականական գործի մասին կարեւոր զեկուցումներ է տուել թէ Բագւում և թէ Թիֆլիսում։

***

Հայոց Դրամատիկ ընկերութեան նախաձեռնութեամբ անցեալ կիրակի Վանքի տաճարում հոգեհանգիստ կատարուեց դրամերգակ (դրամատուրգ) Գաբրիէլ Սունդուկեանի և դերասան Գ. Ջմշկեանի յիշատակին։ Միեւնոյն օրը «Մեղու» ընկերութեան նախաձեռնութեամբ Խոջիվանքի գերեզմանատանը հոգեհանգիստ կատարուեց հանգուցեալ օր. Ս. Օհանջանեանի գերեզմանի վրայ, նրա մահուան տարելիցի առիթով։

***

Թիֆլիսում գտնուող թիւրքահայ մտաւորականներն իրենց միջից ընտրել են մի յանձնաժողով՝ թիւրքահայ գրասէրների միութիւն կազմելու համար։

---

# ՏԱՃԿԱՀԱՅԵՐ

## ԻՏԱԼԱԿԱՆ ՄԱՄՈՒԼԸ ՀԱՅԵՐԻ ՄԱՍԻՆ

Il turco miete. Eran le teste armene
Che ier cadean sotto il ricurvo acciar:
Ei le offriva boccheggiante e oscene
A i pianti dell Europa a imbabsamar
. . . . . . .
. . . . . . .
I monarchi di Christo assisteranno
Bianchi enuchi a l'arem del Padiscia.

Carducci *)

*Թուրքը հնձում է. հայի գլուխներ էին*
*Որ երէկ կեռ դաշոյնի տակ ընկնում էին*
*Դեռ հոգեվարքի մէջ, գարշելի,*
*Որոնց նա ընծայաբերում էր Եւրոպայի*
*Արցունքներին, որ զմռսուեն.*
. . . . . . .
. . . . . . .
*Քրիստոնեայ թագաւորները, սպիտակամորթ ներքինիներ, փադիշահի հարէմի սպասաւորութիւնն են անելու։*

*Քարտուչչի*

Այսպէս էր երգում 1896-ին մեր Քարտուչչին։ Աթէնքից տրուած մի կարճառօտ հեռագիր որ լուր էր տալիս հայերի շարունակուող կոտորածների մասին, մեզ վրայ թողնում էր օգնութեան կանչող ցաւագին աղաղակի հեռաւոր արձագանգի տպաւորութիւն։ Բանաստեղծը սիրտը վրդովմունքից յորդ եղած, այդ աւաչին պատասխանում էր իւր աւաչով։ Այդ օրուանից ահա սկսաւ կրկնուիլ այդ արձագանգը, որ գնալով աւելի և աւելի կարճ ընդմիջումներով՝ բայց կառչող մի յամառութեամբ՝ վերջի վերջոյ դարձաւ այսօր գոներս ափ առած ու տուր ու դադար չունեցող, սրտապատառ բողոքը, որ մեր գալարուող աշխարհի վրայ, միլիոնաւոր ձայների վանգինի մէջ (cacofonia) աղէկտուր, մորմոքիչ մի խաղն է։

Անդրանիկ քաղաքակրթութիւնների օրրան արեւելքում՝ դէպի ուր ճակատագրի հասունութեան մի օր նորից հրաւիրուելու է Եւրոպան, ասիական բարբարոսը ն ա տ լինել կործելուց առաջ, արիւնոտ կեռ թուրը (scimitarra-եաթաղան) ձեռքին որպէս մեր եւրոպացոցս երեսին շպրտուած մի հուսկ վերջին անարգանք, կեցել, ապշութեամբ ունկընդրում է, որովհետև Եւրոպայի զառամութեան կեղևի տակ ինչ-որ բան է խմորւում, տակն ի վեր լինում։

Օգնութեան կանչող այն ջոկ ջոկ թէ ցրիւ ձայները հաւաքի և բողոքի իղձեր էին անցել։ Ամեն ինչ շրջում էր իրերը և դէպքերը տանում դէպի իրենց հասունութիւնը՝ վախճանը։ Եւ այսօր երբ փրթել է փոթորիկների ամենանողկալին, երբ հրդեհը սարսափելի ծաւալւում է ու արիւնը հեղեղում երկիրը, երբ շառաչն ու պոռչտուկը խլացնում են մեր լսելիքը, այսօր, պատմութեան այս ամենաողբերգական ժամին, արիւնով մաքրագործուելու են վէրքերը և պիտի կազմուի ժողովուրդների վերջնական համաձայնութիւնը. այդ ձայները նորից ու նորից լսւում են, բարձրանում, լցնում մթնոլորտը և ծաւալւում ինչպէս ջրի մէջ ընկած քարի շուրջը գոյացող ալիքների համակեդրոն շրջանակներ։

Աշխարհիս վրայ, ուր հայեր կան, խօսում են իրենց հեռաւոր դժբաղդ հայրենիքի մասին, պատմում են իրենց դարաւոր տխատանական ողորումների արցունքի և փշրուած հին յոյսերի և սրանցից վեր ընձիւղած ակնկալութիւնների մասին։ Յանուն իրենց իրաւանց աւաչ բարձրացրել են մարդկութեան և արևմտեան քաղաքակրթութեան երեսին, որի յաղթանակին համար նոքա, մեզ դեռ ևս անծանօթ այնքան շատ բան են արել անցեալում։ Նրանք են որ Ֆրանսիայում ցանեցին զգացման այն սերմերը, irredentisme-ի երկրի անկիւնում ուր պատմական հանճարը ուզեց, որ՝ լինի մարդկայնական ամեն մի մեծ գաղափարի բեղմնաւորման դաշտը։

Իսկ մենք. երբ Լատին քաղաքակրթութեան համար մղուող այս պատերազմում ամեն մի մեծ գաղափար նորս է գալիս որպէս մի նոր դաշնակից ձեռքին մի նոր սուր ճօճելով, մի՞թէ մենք, իտալացիքս, կարո՞ղ ենք մեր ցեղի ամենամաքուր պարծանքը եղող բանը, այսինքն՝ խորապէս մարդասէր լինելներս մոռանալ։ Ո՛չ, բացարձակապէս ոչ։ Զէնքը դեռ ևս ձեռքից բաց չթողած երկիրների ներկայացուցիչների consesso-ի մէջ պէտք է վերջապէս արտասանուի արիւնաքամ եղած ժողովուրդների մասին նրանց վճռական խօսքը, հարկաւոր է վերջապէս որ ամենի թէ սրտին և թէ խղճմտանքին մէջ տեղ ունենայ ամեն մի իրաւասիրութիւն։

Մենք այժմէն իսկ սովորելու ենք որ այդ Հայաստանն է, որ եղաւ, արաւ և ուզեց մէկ մէկ տապալելով բոլոր այն նախապաշարումները, որ մի սէքտական և վարձկան պատերազմ անդադար յեղյեղում էր։ Վաղը, եթէ պատահի, բարձրերում բազմիցրած ախոռների վրայից չկարողանայ բարձր հնչել մեր ձայնը, և իցէ թէ այնտեղ պակասի նրանց արիւնաքամ ժողովուրդների դատի մասին խոր մի իմացողութիւն. այնուհանդերձ այդ ձայները լինելու են ոչ նուաղ անկեղծ և ոչ էլ անբաւական կերպով տաք։

Թող ամեն մի փոքրիկ միջավայրից, ամեն մի օրագրից, ամենահամեստ համախմբումներից և հրատարակութիւններից դուրս գայ յուզման մի սրտագին խօսք և ամեն միոյ մեզանից ականջ դնելով կոծերի և լացերի ձայնին, թող մի քիչ կցորդի ուրիշների ցաւին։

Ահա այս է մեր և ամենի պարտքը։ Թո՛ղ առաջինը ինքը Թուրինը, պատերազմիկների և բանաստեղծների այս մեծահոգի քաղաքը, պատասխան տայ Իտալիային ձայնարկուած կոչին և այդ ժամանակ մի գոհար ևս պիտի զարդարէ իւր թագը։

Նրանցից, որոնք առանց այն էլ շա՜տ շատ են զոհաբերում հայրենիքի համար արիւնով, խելքով և հարստութիւնով, մենք նրանցից աւելին չենք պահանջում։ Եթէ միշտ չի գտնուիր մի Բայրոն որ երթայ մեռնելու ուրիշ հայրենիքի համար, թո՛ղ սակայն այնքան լինի, որ մենք էլ առնուազը յուզուելու ընդունակութիւնը չկորցնենք։

(Giornale di Lodi)

Lauro Cordara

Թարգ. Իտալ. Արչ. Ճէթվաճեան

*) 19-դ դարի Իտալիայի ազգ. պարծանք և ամենամեծ բանաստեղծը.
Ա. Ձ.

## ՆՈՐԱԳՈՅՆ ԼՈՒՐԵՐ ԹՈՒՐՔԻՈՅ ՀԱՅ ՏԱՐԱԳՐԵԼՈՑ ՎՐԱՅ

*Կոնիայի չէլէբին՝ հայապաշտպան — Երուսաղէմի մէջ Օրմանեան սրբազան 30,000 հայ տարագիր կը հոգայ։*

Վեր. Թովմաս Գ. Մկրտիչեան մեզ կը ղրկէ Թիւրքիոյ մէջ գտնուող հայ տարագրելոց վերաբերեալ հետեւեալ նորագոյն և անտիպ տեղեկութիւնները, զորս քաղած է այնպիսի ականատես անձերէ, որոնցմէ ոմանք Պոլսէն ճամբայ ելլելով անցած են յիշուած բոլոր վայրերէն և առիթն ու պատեհութիւնը ունեցած են տարագրեալները անձամբ տեսնելու և հետերնին խօսակցելու։

Կոնիա և Էրէյլի կան իբր 400 ընտանիք, որոնք տեղահան եղած են Իզնիկէն և շրջակայ գիւղերէն։ Այս տարագրեալները բաղդադմամբ ուրիշ տեղահանուած հայերու ամենէն բաղդաւորն են, քանզի Կոնիայի Հալիմ չէլէբին կը հովանաւորէ և կը կերակրէ ամենն ալ։ Այս հայերը երախտապարտ են չէլէբիին։ Չէլէբի ընտանիքը հին սելջուքներու Ցեացորդը և ուստի ամենէն ազդեցիկն են Կոնիայի վիլայէթին մէջ. ասոնց տրուած է առանձնաշնորհումը և իրաւունքը՝ սկիզբէն ի վեր՝ Թիւրք սուլթաններու Թուրը կապելու, երբ գահ կելլեն, մեծ արարողութիւններով։

Բոզանթի կան իբր 200 ընտանիք հայ, որոնք բերուած են Ադաբազարէն և Բէօթահիայէն ու շրջակայ գիւղերէն։ ·

Րաջօ կան 1000—1500 տարագրեալ հայեր, մեծաւ մասամբ կին, աղջիկ և երեխայ, որոնք տարագրուած են Միսինսէն ու Ջիհանէն։

Հալէպ քաղաքին մէջ կան իբր 5000 հայ տարագրեալներ, որոնք բերուած են Ադանայէն, Զօք Մարզուանէն։ Ասոնք կը հոգացուին տեղացի հայերէն և միւս քրիստոնեայ ազգերէն, յօժարակամ։ Վերջերս իբր 500 կին և աղջիկ Խարբերդէն բերուեցան հոս, վերջին ծայր արգահատելի է գրեթէ մերկ վիճակի մէջ։ Ասոնք ալ անմիջապէս վայելեցին իրենց հայ եղբայրներու և քոյրերու, ինչպէս նաև միւս քրիստոնեայ ազգերու օգնութիւնն ու մխիթարանքը։

Համա և Հօմս կան իբր 20,000 տարագրեալ հայեր, որոնք քշուած բերուած են Մամուրէթ-իւլ-Ազիզէն (Խարբերդ), Դիանայէն, Օսմանիէէն, Այնթապէն, Թօփրակկալէէն և Հասան-Բէյլիէն։ Այս տարագրեալները հաստատուած և գրեթէ ամենն ալ գործի սկսած են ու իրենց օրական հացը ապահովելու վրայ են։ Ասոնք ալ ապահով են, գի երկրին արար բնակչութեան համակրանքը կը վայելեն։

Դամասկոս կան իբր 7000 հայեր, որոնք տարագրուած են Քէսաբէն, Օրդուէն, Կարադուրանէն և Քեբուսայէն։ Ասոնք ալ կը վայելեն տեղացիներու օգնութիւնն ու խնամքը և ազատ են այլեւ նողկալի հետապնդումներէ, ինքզինքնին ապահով կը զգան ու բստ կարելոյն գոհ են իրենց վիճակէն։

Երուսաղէմ կան իբր 30,000 հայ տարագրուածներ, որոնք քշուած բերուած են Պարտիզակէն, Քարամուսալէն, Բանդրմայէն և Եալօվայէն։ Օրմանեան սրբազան օրհնութիւն եղած է այս թշուառ տարագրեալներուն, կրնէ իր ամեն հնարաւորն ու կարելին՝ կերակրելու և մխիթարելու այս բունագուրկ թշուառները։ Տեղւոյն Թիւրք իշխանութիւնն ալ կօգնէ Օրմանեան սրբազանին՝ իր հօտը խնամել և հոգալ կարենալու համար։ Այս տարագրեալներն ալ չափով մը հաստատուած են տեղւոյն վրայ և գործի սկսած։ Ազատ են հետապնդումներէ և կը վայելեն արար բնակչութեան համակրանքը։

Դամասկօսէն Բիր-էլ-Սարհա երկաթուղւոյ գծին, ճամբաներու շինութեան և այլ զինուորական պէտքերու փոխադրութեան համար կը գործածուին 10,000 հայ կորիճներ 20—45 տարեկան, որոնք ծանր և ամենէն նուաստ աշխատութիւնները հարկադրուած են։ Ասոնք բերուած են Պարտիզակէն, Իզմիդէն, Ադա-Բազարէն, Էսկիշէհիրէն, Կոնիայէն և Բալըքէսիրէն։ Այս հայերը Թիւրքիոյ ուրիշ կողմերը նոյն նպատակին համար գործածուող իրենց հայ եղբայրներէն շատ աւելի բաղդաւոր են, գի կը կերակրուին և տեղացիներու Թշնամանքին նշաւակ չեն։

Թովմաս Գ. Մկրտիչեան

(Եգիպտոսի «Արև»)

# Գեղարուեստ

## ԱՇՆԱՆ ԳՐԿՈՒՄ

*Աշո՜ւն է գունա՜տ, տխուր ու անկեանք,*
*Երկինք'ն ամեն օր անձրև է մաղում.*
*Եւ սիրտս՝ անբո՜յր, սի՜րտս՝ անկրակ,*
*Քար ու քոլի մէջ, Թախծո՜ւմ է դողում...*

*Լո՜ւռ մենաստանիս ցուրտ պատերի տակ,*
*Հողմե՜րն են անվերջ հեծո՜ւմ — հեծեծում.*
*Դու չըկաս, ո՞ւր ես, իմ երա՜զ յստակ,*
*Սոսկո՜ւմ է հոգիս մենութեան ծոցում...*

*Աշո՜ւն է անգոյն, անխինդ ու խամրած,*
*Հուքե՜րն են մԹում տխուր հեկեկում.*
*Քո հուր կարօտից տանջուած ու հիւծուած*
*Իմ սի՜րտն է լալիս... աշունի՛ գրկում...*

Վարսենիկ Աղասեան

# Գրականութիւն

### ՈՐՈՆՈՂԻ ԱՊՐՈՒՄՆԵՐԻՑ

Որոնումների անվերադարձ ու կորստաբեր ուղին բռնած՝ գնում էր նա վերջալոյսի մարուող ցոլքերը գրկելու և նրանց նըրբափայլ շողերում մեռնելու...

Գնում էր դրա վերջին հրաժեշտի մարուող համբոյրից մասն առնելու, որ տիեզերքի սարսափ-ցաւերից յոգնած՝ յուսախաբ հոգին շնչւնչ առնի, հանդստանայ և իր վշտածոր սրտի իւրաքանչիւր անկիւնը ամոքի այն կախարդ համբոյրով, որի կարօտից տոչորուել էր նա։ Սակայն հանդչո՜ւմ էին կամաց-կամաց վերջալոյսի Թոյլ ճառագայԹներն անդարձ...

Մահուան բուքէն մօտ էր և աղօտ լոյսը նկրկում էր անԹափանց խաւարը։

Ահա և մարեցին անզօր ցոլքերը ընդմիշտ ու նրա սրտի խորքում Թողին մի խորունկ կսկիծ, անճար հոգին շղԹայուեց և կարօտից տոչորուած փղձկաց ներքուստ ու դժնդակ աշխարհն անիծեց։

Ուղին մոլորուեց սոսկալի ամայութեան մէջ և յոյզերը կուտակուեցին մտքերի հետ մէկ տեղ, որպէս լալկան ամպեր, որոնք ցասման վայրկեանին կախւում են երկնքի երեսից ու ճանկռոտում միմեանց կատաղօրէն։ Գարնան գեփիւռը իւր քնքուշ սօսափիւնով ծառերի դալարածածկ տերևներին նանիկ էր կարդում և նրանց հետ ինքն էլ երգում գիշերային մե՜ղմ խորհրդաւորութեան մէջ։ Աղբերակներն ու գիշերախօս առուակներն օրօր էին ասում նրա ցաւագար հոգուն։

Ցօղածոր լուսինը իւր կաթնանման դէմքով ժպտո՜ւմ էր անհաս բարձունքից և ուղեկցում նրան։

Մենակ էր նա և կախարդուած որոնումների անյայտ տենչերով... հոգու թովչանքն էր որոնում, իղձերը մաշող անյայտ անրջանքն էր փնտրում... բայց շղթայակապ հոգով միշտ անզօր ու ողբասաց՝ որոնումների անդարձութեան ուղին էր ցանկանում, որտեղ պիտի հանգչէր յաւէտ։

Նա ցանկանում էր, որ գարնան բոյր ու զեփիւռ, անուշահամ ջրերի, քաղցրահոտ բոյսերի և նրանց խորհրդաւոր փսփսոցի տակ հանգչէր ու թաղուէր, որովհետև գիտէր, որ իւր մահից յետոյ միայն նրանք անվերջ կերգեն աճիւնին և յաւիտենականութեան գաղտնիքից կփսփսան շիրիմին, իսկ մարդիկ այդ չեն անի, նրանք միմիայն կխօսեն բամբասանքից ու նախանձից և կվրդովեն իւր հանգիստը...

Նա ցանկանում էր, որ անուշախօս առուակներն և կարկաչիւն աղբիւրակները խօսէին իր հետ իւր անդարձութեան ճանապարհին...

Նա ուզում էր, որ ուղին միշտ անտառներում մոլորուի և վերջալոյսի ու արշալոյսի կարօտով տոչորուի, որովհետև այդ էր համարում երջանկութիւնը...

Եւ մտքերը կուտակւում էին ու յիշողութիւնները բարդւում։

Նրա մտքի միջով անցնում էին մէկիկ մէկիկ իւր անցած օրերի երանելի ժամերն ու բոպէները, զուարճալի կատակներն ու պատանեկութեան—որպէս իւր ուղին—անդարձ տարիները, որոնք աւելի ևս քայքայում էին նրա հոգին ու միտքը։ Ահա նրա առաջ աղբիւրը իւր հոյլհոյլ կոհակներով, որոնք կախարդական պարերով յափշտակում էին նրա երևակայութիւնը։ Ահա սգաւոր, դալարաստիկ ուռենին, որ աղբիւրին կից՝ օրօրւում էր շարունակ և կայլակւում։ Նստում էր աղբրի ափին, ուռենու սօսափող տերևների տակ և նայում մտացրաղ յոլունքեայ կոհակներին, որոնք դուրս էին ցայտում աղբրի ակից և սփռւում նրա լճացած մակերդակին։ Լսում էր թախծութեամբ նրանց ձայնը և աշխատում լուծել այդ դժուարագոյն խորհուրդը։

Գեղեցիկ և յափշտակող պատկերները յաջորդում էին միմեանց և նրա երևակայութիւնը վառում ու ցնորումների մէջ դցում... Եւ ի՞նչն էր այդ խորհրդաւորութիւնը, ո՞րտեղից էր սկիզբն առել և ո՞րտեղ հանգչում. Նա ցանկանում էր հասկանալ այդ ի ն չ ն ու ո ր տ ե ղ ը, բայց անզօր էր. ուզում էր թափանցել այդ հարցումների խորքը, սակայն չէր կարողանում...

Եւ սրտմաշուկ, անհուն տառապանքնե՛րը—աշնան տերևների նման դեղին ու դալուկ, թօշնած ու խամրած—կուտակւում էին նրա սրտում և միգապատ կեանքի թառամած աշունը կազմում։ Տերևաթափ ծառի նման՝ լալիս էր նրա մթագնած հոգին և անթև ու անքուն՝ նողկանք էր թափում կեանքի աշունքին... Մահերգն էր զօղանջում հոգու հետ կարեկցաբար...

Հեծեծանքնե՛րն էին մխում լռելեայն անվերջ ու թախծավառ... Եւ աշնան հեծեծանքների հետ շաղախուած արցունքները սահում էին դէպի ցած։ Օ՜, այդ չցամաքող արցունքները նման էին աշնան հողմաթափ տերևներին...

Տերևնե՛ր, որոնք հիւանդ ու տարտամ՝ սգաւոր քամու հառաչից անզամ՝ օդի մէջ պտոյտներ անելով՝ ընկնում են անվերադա՛րձ և շունչները փչում մայր երկրի վրայ...

Տերևնե՛ր, որոնք խուլ հեծեծանքով կեանքերն են մաշում ոռնացող հողմերի առաջ և մարում յանկարծ՝ լո՛ւռ ու խորհրդաւոր թաղման հանդէս կատարելով այս քամբախտ երկրի վրայ։

Նրա խանձուած հոգու փետուրները մէկիկ-մէկիկ՝ աշնան դեղնիկ տերևների նման պոկւում էին ու հեծեծիւնով ընկնում մահանում...

Եւ հեծում էր հոգին ուժգին ու սաստիկ, ինչպէս ծառը, երբ զրկւում է իւր տերև-փետուրից։

Մահերգն էր զօղանջում հոգու հետ կարեկցաբար...

Հեծեծանքնե՛րն էին մխում լռելեայն անվերջ ու թախծավառ...

Վա՜յ, վի՜շ—վերջին հառաչանքներն էին տերևների, որոնք մեաս բարև ասելով երկրին ու ափսոսալով՝ գնում էին հանգչելու անդառնալի, անսէր ու անտէր մառախլապատ մթութեան ծոցում։

Ա՜խ, վա՜խ—հրաժեշտի խօսքերն էին ցաւագար հոգու, որը լի հառաչանքով և զրկուած սփոփանքից՝ գնում էր անդարձ մըխրճուելու յաւերժ մթութեան գրկում ու նետուելու նրա հետ խաւարապատ անդունդը՝ փչելու շունչը յաւիտեան...

Եւ տերևների հանգստութիւնը սև հողն էն յաւէտ։ Նրանք բաց երկրի վրայ և պարզ երկնքի տակ՝ հանգիստ էին գտնում իրենց չարքաշ ու կարճատև կեանքերի համար։

Սակայն նրա հոգու համար մութն էր ամեն ինչ. արևը չէր ժպտում նրան այնպէս, ինչպէս տերևների չորացած կոյտերին. նա զրկուել էր ընդմիշտ և օր ու արև չէր տեսնում երբէք։

Նրա գերեզմանը մութն էր ու գարհուրելի, նրա հոգին ահաւոր՝ սգում էր անվերջ...

Եւ արհաւրալից հոգու ծնունդը տառապանքն էր հզօր, որ կազմում էր նրա կեանքի թախծապատ աշունը։

Եւ աշնան տերևազուրկ ծառի նման հեծեծում էր նրա թըշուառ հոգին ու ափսոսալով մարում մայր երկրի ցաւագին ծոցում։

Նա կորցրել էր իւր դժբախտ հոգու անգտնելի և անխմանալի թովչանքը մաշող. նա սգում էր անցեալի կորուսած գեղեցկութիւնը...

Տիգրան Տէրունի

## ՆԱՀԱՆՋԻ ԴՐՈՒԱԳՆԵՐԻՑ

### ԹԱՓԱՐԷՋԻՑ ԴԸԶԸԼ-ԴԻԶԷ

(Կառապան Իվանը)

Յուլիս 24-ի աղօթարանը բացուած էր՝ երբ շարժուող կառաւանի աղմուկը մեզ զարթեցրեց։ Իջնում ենք Թափարէզի բարձունքներից. վայրէջքը նոյնքան դժուար է՝ ինչքան վերելքը։ Կէսօրուայ կողմը հազիւ ենք հասնում ստորոտը և մի գետակի ափին, տաք արևի տակ փռւում՝ գիշերուայ անքնութեան պակասը լրացնելու համար։

Կէսօրը կոտրած, բռնում ենք հարթ ճանապարհը՝ անցնելով մի քանի քրդական գիւղերից։

Հիւսիս-արևմտեան հեռաւոր լեռներից խուլ թնդանօթի որոտներ են լսւում, հաւանաբար Ալաշկերտի կողմերից։

Արևան-Ջորի թալան-կուրխները գտնելու օրն է այսօր։ Երկու օրերի շտապ ընթացքը յանկարծակիի է բերել «արդէն ապահովուած» թալանչիներին։ Երբ կորուստի տէրերը տեսնում են, որ առաջին շալակով Վանից դուրս եկողը արդէն մի քանի բեռնաւոր եզների տէր է եղած, և կամ, երբ գիւղացու սայլն ու եզները յանկարծ տեսնում են սովորական կեղտոտ լաթերի քով և մաքուր վերմակներ ու իրենց բեռները յիշեցնող թէլիս-ջվալներ, իսկոյն կասկածի են գնում և սկսում բանի խուզարկութիւն։ Մի քանի տեղեր արդէն մասնաւոր խուզարկու զինուած խմբեր են պատրաստուել, որոնք շատ հեղ վստահութիւնը ի չարը գործ դնելով՝ իրենց հերթին թալանում են թալանչիներին... Եւ ամեն անգամ, երբ գողօնը երևան է հանւում, ինչ ուրախութեամբ և նզովքով ու լացով վրայ է ընկնում տէրը, խլխլում, գուրգուրում իր ապրանքը, թքում ու մրում ամօթից գունատուած գողին, որ յամենայն դէպս՝ չէ մոռացել մի քանի արժէքաւոր իրեր նախապէս թռցնել, սթրել ուրիշ տեղ՝ գուշակած լինելով արդէն այս բոլոր պատահմունքները։ Մինչ տէրը լացով պաշտանջում է իր արծաթ-ոսկեղէնները, իր «յիշատակ» մետաքսեայ թաշկինակները, թալանչին, իր հերթին, բղաւում է վրան, երդւում, հայհոյում, որ այս բոլորը ինքը թուրքերի անից է թալանել, որ, հետևաբար, իր վիզը զարկում են այդ «անօրա քաղքցիք», խաբելով թէ

*իրենցն է... Եւ սկսւում է քաշքշուքը, ծեծն ու սպառնալիքը, մինչև գալիս, միջամտում են ուրիշները, մէկտեղ են ելնում վկաները երկու կողմից ևս ու զօրաւորին էլ մնում է իրաւունքը...*

*Խե՜ղճ մայրս, այս բոլորը տեսնելով՝ խենթի պէս է այսօր։ Վանում թողած բոլոր իրերը այնքան չի ափսոսում, ինչքան այն մի քանիսը, որոնք ինքն իր ձեռքով յանձնել էր անծանօթ սայլապանին։ Ո՞ւր է նա այժմ... Իւրաքանչիւր համանման բեռը տեսնելիս, նա վազում է ետեւից և ճչում բեռնատիրոջ կանգնել ու ցոյց տալ մէջի իրերը... Զո՜ւր ճիգ. «էմանէթը եղել է գըլյամէթ»։*

*Հետզհետէ մօտենում ենք Գըզըլ-Դիզէին։*

*Մեր դիմացն են գալիս «սրտացաւ» հայեր և առաջարկում ծախել զէնքերնիս, «որովհետև Գըզըլ-Դիզէի ռուս պահականոցը պիտի հաւաքէ բոլորը...» Այդ «խորհուրդ»-ները կրկնւում են այնքան՝ որ չի կարելի բոլորովին չհաւատալ նրանց։ Ոմանք փորձում են ծախել իրենց մ ա ո ւ զ է ր հրացանները 5—10 ռուբլով, ուրիշներ՝ իրենց ատրճանակները՝ կէս գնով։*

*Հասնում ենք Գըզըլ-Դիզէի տակը, մի գետակի հեղեղատում, որից պէտք էր անցկենայինք ոտքներս հանած։ Այդտեղ էլ մի «բարի խորհրդատու»։ Ստիպուած պահում ենք ատրճանակները, իսկ հրացանները որոշում յանձնել՝ եթէ ստոյգ լինէին այդ տարաձայնութիւնները։ Բայց երբ արդէն մօտենում ենք ռուս պահակախմբին, զարմանքով տեսնում ենք, որ նրանք ցոյց են տալիս մեզ հայկական սպայակոյտը (շ տ ա բ ը), մի վրանի տակ, ուր յանձնուելու էին մեր զէնքերը... Ահա թէ ինչ նշանակութիւն ունէին այդ «բարի հրեշտակների» խորհուրդները՝ արդէն թալանուած փախստականի վերջին ապաւէնն էլ պլոկելու համար։*

*Մի աղբիւր կայ Գըզըլ-Դիզէում՝ բաւական առատ, որ ձորակի միջից, մի փայտեայ ծորակով վայր է թափւում։ Ջրի վրայ ծարաւահիւծ ամբոխն ու ռուս կոզակները մրցութեան են մտել՝ հերթը խլելու։*

*Այդ աղբիւրի քով, ճանապարհի եզերքին, յանկարծ պատահում եմ կնոջս ու երեխաներիս, որոնց երեք օր առաջ ռուս բեռնատար (արօզի) կառքերու վրայ զետեղելով՝ ուղարկած էի։ Նահանջող բանակը այդ օր մնացել էր հանգստանալու։*

*Ուրախութեան արցունքներով գրկեցի երեխաներս ու հետաքրքրուեցի նրանց վիճակովը։ Ուղղակի անհաւատալի էր ինձ լսել այն յարգալիր ու գորովոտ վերաբերմունքը, որ ցոյց էր տուել ռուս խ ա խ ո լ կառապանը՝ մերոնց հանդէպ։ Երեք օր շարունակ նա խնամել, կերակրել էր նրանց չայով ու կաթով, իր հացով ու կերակրովը։ Կարիքի դէպքում, նա կանգնեցրել էր կառքը՝ առանց կառապաններին և մանաւանդ զինուորականներին յատուկ գայրոյթի կամ դժկամակութեան։ Ցուրտ գիշերներին էլ սիրով զրկուել էր նա իր տաքուկ ք ի ւ ր ք ի ց, որպէսզի փոքրիկ երեխաներս չմրսին։ Ո՛չ մի վիրաւորական խօսք կամ վարմունք։*

*Գնում եմ նրան տեսնելու։ Իվան է անունը։ Ծանօթանում եմ. բայց ցաւօք սրտի, չգիտնալով ռուսերէն, չեմ կարողանում իմ շնորհակալութեանց ամբողջ անկեղծութիւնը արտայայտել նրան. Նա խուսափում է երախտիքի խօսքեր լսելուց։ Տեղեկանում եմ, որ մի որբ էլ է վերցրել նա ճանապարհին և բերել, յանձնել այստեղի հայկական սպայակոյտին (շտաբին)։*

*Քանի՜ հայ արժէր այս ռուս մուժիկը։*

*Լսել էի յաճախ, որ ռուս հասարակ ժողովուրդը ազնիւ է ու ընկերական, բարի ու գթոտ. այժմ արդէն փորձն էր համոզում ինձ։*

*Թռչնիկ*

---

# ՄԱՆԿԱՎԱՐԺԱԿԱՆ

## ՄԱՆԿԱՆՈՑԻ ԽԱՂԵՐԸ*)

### II

*Անշուշտ խիստ հետաքրքրական էր փորձով ստուգել, թէ երբ և ինչ արտաքին հանգամանքների տակ է զարգանում սէրը մանուկի մէջ դէպի գեղարուեստական խաղը։ Մանկավարժութիւնն ու հոգեբանութիւնը դրա համար, որքան յայտնի է, դեռ պատասխան չեն գտել։ Պէտք էր կարծել, որ մտաւոր գործունէութեան այդպիսի բարդ տեսակը համեմատաբար ուշ երեան գայ։ Սակայն այդպէս չէ։ Զգայարանական ու շարժուն խաղերը անշուշտ աւելի վաղ են լոյս ընկնում քան թէ գեղարուեստական խաղերը։ Մկաններն ու զգայարանները կանխօրէն մի որոշ աստիճան վարժուած պիտի լինեն, որ յետոյ գեղարուեստական ձեւով գործադրուեն։*

*Բայց գեղարուեստական խաղերն եւս վաղ են աչքի ընկնում, արդէն 3 տարեկան հասակից։ Սկզբում լինում է նմանողութեան հակում, այսինքն այն հակումը, որ նոյնպէս հայրն է լեզուի, խօսելու։ Մանուկն անզուսպ պահանջ է զգում նմանուելու իրան շրջապատող իրերին և անձանց։ Այլապէս մութ կը մնար, թէ ինչու մանուկն առարկաների նմանողութեանց վրայ աւելի մեծ հրճուանք է զգում, քան թէ իսկական առարկաների վրայ։ Սիմբոլիկը-խորհրդանիշը ակներև դրուած է նրա արեան մէջ։ Շատ դէպքերում սէրը դէպի գեղարուեստական խաղը զարգանում է առանց մեծերի աջակցութեան։ Ուստի դաստիարակը կարիք չունի հակում զարթեցնելու, այլ միայն օգնելու և կանոնաւոր ընթացք տալու։*

*Սկզբի տարիները գեղարուեստի կրթութիւնը կայանալու է նրանում, որ խաղալու սէրը զարգացուի չափաւոր և ըմբռնելի կերպով։ Կարիք չըկայ, շարունակ յորդորել և բորբոքել։ Բնութիւնից զօրեղ երևակայութեամբ օժտուած մանուկներն ինքնաբերաբար միշտ գեղարուեստական խաղեր են պահանջում։ Այդպիսիներին առաւել լաւ է յետ պահել քան թէ տաքացնել, բորբոքել։ Երևակայութեան գործունէութիւնն իրա չափազանցութիւնն ունի, որից կարելի է խիստ վնաս կրել։ Իբսէնն իրա նշանաւոր երկի (Պէր Գինթ) մէջ այդպիսի տիպ է նկարագրել։ Դժբաղդ հերոսի մօր հասցէին ոչ մի յանդիմանութիւն չի խնայում, թէ ինչու գեղարուեստական մտապատրանքներին անձնատուր եղած զաւակի հիւանդագին զարգացած հակումը չափազանց բորբոքել է մանուկ օրերից։*

*Եթէ մանուկի մէջ բնականից քի՛չ թերի է գեղարուեստական մտապատրանքի ունակութիւնը, դաստիարակի ձեռին դժուար չէ մտաւոր վարժութիւններով գեղարուեստական խաղի ախորժ զարթեցնել։ Սկզբի տարիքը, այսինքն 3—6-ը մանուկի մտաւոր զարգացման համար ամենակարևորներն են։*

*Հէնց այս ժամանակամիջոցում կատարւում է բնաւորութեան, խելքի և զգացմունքի մշակումը։ Ինչոր բ ն ա ծ ի ն, բ ն ա կ ա ն ընդունակութիւն է կոչւում, մեծ մասով իւրացրած է լինում այս տարիների կրթութեան շնորհով։ Եթէ մէկը կամենար կամ կարողանար բոլոր նշանաւոր գեղագէտների կեանքի պատմութիւնը մինչև մանկական հասակը քրքրել, կըտեսնէր, որ նրանք այդ միջոցին են լիապէս անձնատուր եղել գեղարուեստական խաղին, յետոյ մասամբ իրանց բնական ձիրքի շնորհով, մասամբ ծնողների յորդորներով խրախուսուած զարգացրել, կատարելութեան են հասցրել իրանց գեղարուեստական խաղի հակումը։ Յայտնի է թէ Գէօթէի մանկութեան զարգացման մէջ ինչ ահագին դեր են խաղացել առասպելներն ու մարիոնէտների խաղերը, կատակները։*

*Գեղարուեստական խաղի մէջ հրահանգելու ամենակարևոր պայմանը յարմար, իսկական խաղալիքների մասին հոգալն է։ Աւելի խելացի է մանուկին սակաւ թուով խաղալիք տալ քան թէ շատ։ Մեծ մոլորութիւն է, երբ կարծում են, թէ բնականի նման խա-*

*) Տես «Համբաւաբեր» № 40։

բանքը, որ անհրաժեշտ է թէ իրա ապագայ գեղարուեստական կրթութեան համար և թէ զաւակների։ Մի մայր, որ իրա 13—14 տարեկան աղջկան յետ է քաշում տիկին խաղալուց կամ նրան համոզում է, որ ամօթ է մեծ աղջկայ համար տիկին խաղալը—մեծ յանցանք է գործում իրա զաւակի ապագայի նկատմամբ։ Այն կանայք, որ մանկութեան միջոցին քիչ են տիկնիկով զբաղուել, չափահաս տարիքում ցոյց են տալիս գեղարուեստի աղօտ ընդունակութիւն և զգացմունքի պակասութիւն։ Նրանք դժուար թէ երբևէ գեղագէտների մայրեր դառնան, հազիւ թէ կարենան իրանց զաւակներին գեղարուեստօրէն կրթել, որ անհրաժեշտ բան է։ Նրանց խնամքին յանձնուած սերունդը թերևս լինի վաղ հասուն, խելօք, սակայն գեղարուեստի կողմից մեռած, անտարբեր...

Տղայի համար էլ կան հանգամանքներ, որոնցով կարող է գեղարուեստական խաղը մինչև չափահաս դառնալը շարունակել։ Մարիոնէտի ներկայացումները նրա համար կամուրջ են դէպի դրամատիկ արուեստը։ Վառ երևակայութեամբ օժտուած տղայքն իրանք են պահանջում մարիոնէտի պէս խաղեր։

Գեղարուեստական խաղերը պիտի կցել ուսման ամբողջ դասընթացքին, ընդհանուր մանկավարժական սկզբունքների համեմատ կարգ ու կանոնի ենթարկել, ասում է Կոնրադ Լանգէն, հարկաւոր չէ շարունակ մանուկներին յորդորել կամ գեղարուեստական խաղ սարքելու գաղափարը տալ։ Այդ բանը նրանց կը դարձնի ինքնուրոյնութիւնից, երևակայութիւնից զուրկ արարածներ։ Կարելի է օգնել միայն ձիրքի կողմից պակասաւորին, որպէսզի գեղարուեստական հակումը դէպի մտապատրանք նրա մէջ վաղաժամ չը թուլանայ ու երևակայութիւնը ժամանակին զարգանայ։

Արդեօք մանուկին դէպի շարժուն խաղերը պիտի յորդորել թէ դէպի գեղարուեստական խաղերը—այդ կախուած է նրա անհատական ընդունակութիւնից։ Ամեն մի կրթութիւն մինչև որոշ աստիճան պիտի ձգտի լրացնել բնութեանը, վերացնել ընդունակութեան թերութիւնն ու միակողմանիութիւնները։ Չըպիտի ոչնչացնել կամ թուլացնել անհատական ընդունակութիւնները, այլ արգելք լինել միակողմանի զարգանալուն, որպէսզի մտաւոր և մարմնաւոր ուժերի հաւասարակշռութիւնը չը վտանգուի։ Եթէ մի տղայ ֆիզիքապէս շատ ամուր է և գլխաւորապէս շարժուն խաղերի սէր ունի, այդպիսուն աւելի երկար պիտի զբաղեցնել գեղարուեստական խաղերով։ Եթէ նա մարմնով թոյլ է և գեղարուեստական խաղերի սիրահար, միայնութեան մէջ ընկած մտածմունքների ու երևակայութիւնների ետնից—այդպիսուն պիտի աւելի զբաղեցնել շարժողութիւն պահանջող խաղերով։ Չափազանցութիւնը—այս կողմ լինի թէ այն կողմ—միշտ վնաս է։ Միակողմանի զարգացած երևակայական կեանքը կարող է ջղային հիւանդութեան վտանգ առաջացնել։

Ցանկալի է, որ գեղարուեստական խաղերի հարցը դպրոցի բաղդով հետաքրքրուողների շրջանում աւելի ուշադրութեան արժանանայ, քան թէ մինչև օրս եղել է։

Բ. Ս.

# Գիտական

## ԽՈԼԵՐԱ (Холера) *)

### VIII ՎԵՐՋԱԲԱՆ։

Մէկ քանի խօսք խոլերայի բժշկութեան մասին պիտի ասել, ինչպէս մեր յօդուածի առաջի մասում ակնարկել էինք։

Ինչպէս վերև յիշուեց՝ խոլերան հետևանք է բացիլներից գոյացած թունաւորման, որ ունի հետևեալ ախտանշանները՝ փըսխում, լուծ մարմնի, սառչում, մկանների ջղաձգում, մանաւանդ սրունքների, սրտի սաստիկ թուլութիւն. ապա ուրեմն կազմուածքը պահպանելու համար պիտի համապատասխան միջոցներ գործադրել։

1892 թուականի խոլերայի ժամանակ, երբ ես գործում էի Ղազախի գաւառում, շատ գովասանքներ էին լսւում սառն վաննաների մասին և զ ա լ զ ա ն ի (Rhizoma Galangae), որը օղու կամ սպիրտի մէջ գործադրւում էին. բայց գործը ցոյց տուեց, որ սառն վաննաները վտանգաւոր են և զալզանը անպէտք։ Ընդհակառակը հասարակ ժողովուրդը համարեց տաք վաննաների օգտաւէտութիւնը։ Բժշկականութիւնը չգիտէ մի որևիցէ արմատական միջոց խոլերայի դէմ։ Խոլերայի առաջի շրջանում գիտական բժշկականութիւնը գործադրում է լուծողական կամ գէնչակի իւղ կամ կալոմէլ (calomel) ստամոքսաղիքային խողովակը մաքրելու համար, յետոյ արդէն հարկաւոր է փսխման դէմ, որը այնքան թուլացնում է հիւանդին, գործադրել սառոյց և զանազան դեղորայք և մինչևանգամ սրսկում մորֆի որովայնի շրջանում։

Ես ունէի մէկ շատ ծանր հիւանդ Բարխանսարայում, որի փսխումը ոչ մի կերպ չէր դադարում. միայն մորֆու և ատրոպինի (երկուսն էլ սաստիկ դեղորայք) սրսկումը կանգնեցրեց փսխումը. և հիւանդը առողջացաւ։

Լուծի դէմ շատ միջոցներ են առաջարկւում, ի միջի այլոց և կաթիլներ յայտնի ուսուցչապետներ Բոտկինի, Տիլմանի, Ինոզեմցովի և այլն, իսկ ծայրայեղ դէպքերում տաք գրեխ (Clysma) գլխաւորապէս տանինի (acide tanaique)։

Սրտի սաստիկ թուլութեան դէմ թէ ներքուստ և թէ մորթի տակ պէտք է սրսկել մանաւանդ քեաֆուր-կամֆորա։

Ցաւոտ ջղաձգութիւնների դէմ տաք վաննաներ և հանգըստացնող իւղեր և մաժել—մասսաժ։

Մէզի դադարման և մարմնի ջրազրկութեան դէմ (обезвоживанiе) տաք վաննաներ, գրիքներ և մորթի տակ սրսկումներ, մեծ քանակութեամբ տաք բնախօսական լուծուածքի աղի՝ ամլացրած ջրի մէջ։

Վերոյիշեալներից պարզ է, որ բժշկի անելիքը այն պիտի լինի, որ հիւանդը ազատուի այն վտանգաւոր ախտանշաններից, որոնք ուժասպառ կանեն հիւանդին, այն է՝ փսխում, լուծք, սառչում, միզադադարում, սրտի թուլութիւն, մկանային ջղաձգութիւններ և եթէ հնարաւոր է լինում այդ օգնութիւնը հասցնել, հիւանդը ազատւում է մահից։ Եթէ կայ մի միջոց, որը կարելի է համարել յուսալի, այդ հակախոլերային պատուաստումներն են, որոնց մասին խօսուեց իւր տեղում։

Մենք այստեղ ընդհանուր գծերով խօսեցինք խոլերայի բժշկութեան հիմունքների մասին՝ չմտնելով մասնագիտական մանրամասնութիւնների մէջ. և մենք ստիպուած էինք այդ անելու, քանի որ ինչ-որ նոր դեղ էր առաջարկւում խոլերայի դէմ։ Ոչ մի հիւանդութիւն, ի բաց առեալ սուր թունաւորումները, շուտափոյթ օգնութեան կարօտ չէ, ինչպէս խոլերան. և այդ է պատճառը, որ ուր խոլերայ է երևում, իսկոյն կառուցում են յատուկ հիւանդանոցներ՝ թէ հիւանդներին առանձնացնելու և թէ նրանց բժշկական օգնութեան հասնելու զանազան միջոցներով՝ վաննաներով, սրսկումներով, գրեխներով և այլն, որ կարելի է ունենալ միայն յատուկ խոլերայի համար կարգաւորուած հիւանդանոցներում բժիշկների անմիջական օգնութեամբ։ Ի վերջոյ պիտի աւելացրած, որ Թիֆլիսի խոլերան, համեմատած առաջուայ տարիների հետ, շատ թոյլ է՝ թէ ըստ քանակի և թէ ըստ որակի։ Ինչպէս յայտնեց քաղաքագլուխ Խատիսեանը սեպտեմբերի 19 նիստին, խոլերան, որ երևացել է 25 յուլիսի, որից մինչև 19 սեպտ. եղել են 322 հիւանդ, 139 եկուոր, մնացեալը քաղաքի ազգաբնակութիւնից։ Մահացութիւնը նուազ է, մինչև 30%, մինչդեռ սովորականը լինում է ոչ պակաս 50%-ից. սկզբներում մինչև ան-

*) Տես «Համբաւաբեր» № 40։

գամ 80%-ից։ Ուրեմն ոչ մի առիթ չկայ վախենալու խոլերայից, որը՝ հաւանօրէն, շուտով աւելի եւ կնուազի և թերեւս կանհետանայ։

Բժ. Բ. Աղասարեան

---

## ՎԷՐՔԵՐԸ ԵՒ ՋԵՐՄ ՕԴԸ.

Բժ. Գ. Ի. Բորոդուլինը, որ երկար աշխատել է հիւանդանոցներում, թարախակալած վէրքերը բուժելու մի խոշոր նորութիւն է մտցնում բժշկականութեան մէջ, որի մասին ռուս վիրաբոյժների ընկերութեան ընդհ. ժողովում զեկուցում արաւ։

Աւելի քան 150 փորձերը նրան բերին այն լիակատար համոզման, որ թարախակալած վէրքերը բուժելու ամենալաւ միջոցը ջերմ օդն է։ Իւր տեսութիւնը նա հիմնաւորում է ջերմութեան յատկութեան վրայ, որ սպանում է բացիլները և ուժեղացնում կենդանիների կազմուածքի հիւսուածքների կենսական գործունէութիւնը։ Բժշկելիս նա օգտուել է «ֆոէն» գործիքով, որ վարսաւիրները գործ են ածում մազերը չորացնելու համար։ Օդի տաքութիւնը, որ տարածում է այդ գործիքը, հասնում է 39°-ից մինչև 40°։ Վէրքը այդ տաքութիւնը չի զգում, այլ զգում է վէրքի շուրջը եղող մորթը։ Վէրքը տաքացնելիս՝ դուրս թափուող թարախը սկսում է արագ պակասել, վէրքի հատիկները լաւանում են։ Վէրքի տաքացնելը ամեն օր պէտք է կատարել 15 րոպէ տեւողութեամբ, իսկ մնացեալ ժամանակը պէտք է կապել չոր մաքրած բամբակով։ Այդ ձևով փոքր վէրքերը 3—4 օրում լաւանում են։ Եթէ ոսկորը փշրուած է, կտորները հեռացնելով՝ վէրքը նոյնպէս արագ լաւանում է։ Նմանապէս խոշոր վէրքերը հեշտութեամբ լաւանում են։ Հիւանդները ահագին թեթևութիւն են զգում այդ ձևով բժշկուելիս և իրենք են խնդրում վէրքը «տաքացնել»։ Լաւանալուց յետոյ վէրքի սպին կատարեալ բնական տեսք է ունենում։

---

## ԷԴԻՍՍՈՆԻ ՆՈՐ ԳԻՒՏԸ

Էդիսսոնը նոր զգայացունց (սենսացիոն) գիւտ է արել, որ անհնարին է դարձնում պատերազմը։

Նա հնարել է մի առանձին մեքենայ, որ հզօր ելէքտրահաւաք գործիչների (ակկումուլեատոր) օգնութեամբ առաջացնում է անտեսանելի ելէքտրական պատ, որի միջով անկարելի է անցնել. իսկ իւրաքանչիւր ոք, որ մտնէ այդ պատի մէջ, վայրկենապէս կը մահանայ. Նա հնարել է նաև ելէքտրական ռումբեր, որոնք հասնում են ահագին բարձրութեան և ստիպում են սաւառնակներին (այէրոպլան) վայր իջնել, որով անհնարին է դառնում օդային պատերազմը։

Էդիսսոնը որոշել է իր նոր գիւտերի մասին հրապարակել համաշխարհային պատերազմը աւարտելուց յետոյ։

---

# Թ Ա Տ Ր Ո Ն

## ՀԱՅ ԴՐԱՄԱՏԻԿ ԸՆԿ. ԽՄԲԻ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄԸ.

«ՊԷՊՕ» Գ. Սունդուկեանի

Հոկտեմբերի երեքին հայ Դրամատիկ Ը-թեան խումբը Գ. Սունդուկեանի և Գ. Զմշկեանի յիշատակին խաղաց Պէպօն։

Ներկայացումից առաջ պ. Շիրվանզադէն մի կարճ բանախօսութեամբ բացատրեց Սունդուկեանի և Գ. Զմշկեանի կատարած գործերի արժէքը։ Բանախօսութեանը յաջորդեց Թատրերկի (պիէսայի) խաղը։

Հանրածանօթ այս կատակերգութեան (կոմեդիայի) ներկայացումը որոշ դժուարութիւններ ունի. նախ գրուած է զուտ Թիֆլիսի բարբառով, որն անծանօթ է մեր դերասաններից շատշատերին, տիպերից շատերը տեղական առանձնայատուկ բնաւորութիւն ունին, որով և պահանջւում է դերասաններից յատուկ ուսումնասիրութիւն և երրորդ՝ Պէպոյին բեմի վրայ կենդանացնելը մի մեծ և դժուարին գործ է, որովհետև իր շրջապատից դուրս եկած և մի այլ նոր շրջապատի մէջ մտած անձը պէտք է ներկայանայ Պէպօն։

Դերակատարները Թիֆլիսի բարբառի վերաբերմամբ մեղանչեցին, մանաւանդ Պէպոյի դերակատար պ. Սևումեանը։ Այս բանը աննպաստ էր ազդում ամբողջական տպաւորութեան վրայ։

Թատրերկի գլխաւոր տիպերը գեղարուեստական կերպով վերարտադրելուն աչքի ընկան Տէր-Դաւթեան (Գիքօ), տիկ. Վարդուհի (Շուշան) և Յ. Տէր-Գրիգորեան (Զիմզիմով)։

Պ. Տէր-Դաւթեանը իր առաջ դրած խնդրին զասական կատարելութեամբ արտայայտութիւն տուեց. աւելին ներկայ պայմաններում անսպասելի էր։ Շատ յաճախ պ. Տէր-Դաւթեանը մոռացնել էր տալիս միւս դերասանների ներկայութիւնը, դէպի իր խաղն էր քաշում հանդիսականին և այդպէս լարած պահում սկզբից մինչև վերջը, գլխաւոր և թէ երկրորդական տեսարաններում։

Ո՞րն է այս հմայքի պատճառը։ Պ. Տէր-Դաւթեանը ոչալիստ դերասան է. որքան աւելորդաբար են գործ ածւում ինչ իսկական կեանքն է տալիս, այնքան իրական կեանքն է պատկերացնում խօսքերը շատ դերասանների համար։ Այդ խօսքերը իրենց արժէքը կորցրել են շնորհիւ այնքան անտեղի գործածութեան։

Բայց ահա մի տեղ, ուր այդ խօսքերը կարող են գործ ածուել իրենց լիակատար իմաստով։ Ձեր առաջ ներկայանում է մի ծերուկ մարդ՝ Գիքօ անունով, անմեղ, բարի, սրտացաւ, միամիտ, մոռացկոտ, հասարակ խօսակցութիւնն անգամ նոյ նահապետից սկսող։ Այդ կենդանի, ապրող և շնչող մարդը զանազան պայմանների մէջ՝ իր խօսքերով, դէմքի շարժումներով, մարմնի դիրքի փոփոխութեամբ, բացականչութիւններով, քայլուածքով միշտ էլ արտայայտում է այն նոյն մարդու հոգին, որի յատկանիշների մասին քիչ վերև խօսք եղաւ։

Հանդիսականը հիանում է խաղի այսչափ հետևողականութեան վրայ։ Այս բոլորից յետոյ բնական է, որ ամբողջ խաղը դուրս է գալիս ա մ բ ո ղ ջ ա կ ա ն և միևնոյն շնչով կենդանացած։ Մեր դերասան-դերասանուհիներից շատ-շատերին պակսում է այս արժանիքը. զանազան տեսարանների կամ գործողութիւնների մէջ տարբեր, բոլորովին տարբեր անձինք են ներկայանում, չեն կարողանում դերին ամբողջականութեան դրոշմ տալ և այդ պատճառով էլ նրանց խաղը տհաճ կեռմաններով (զիգզակներով) է առաջ գնում։ Տէր-Դաւթեանի խաղն ազատ է այդ բոլորից. շատ տեղեր ցանկանում ես, որ գործողութիւնը արձանանայ, որպէս զի հնարաւորութիւն ունենաս աւելի լաւ դիտելու, հիանալու շուտով անցնող խաղով։ Թւում է, որ մի բանից պէտք է խուսափէր պ. Տէր-Դաւթեանը—աւելորդ կատակախաղից (կոմիզմից). գոնէ տեղ-տեղ այն համոզմանն էի գալիս, որ որոշ տեղեր խաղն աւելի էր ծիծաղելի դուրս գալիս, քան հարկաւոր էր։

*Գ. Տէր-Դաւթեանի խաղի յատկանիշներով օժտուած էր նաև տիկին Վարդուհու խաղը, սակայն ոչ նոյն կատարելութեամբ. սա էլ խաղի տէրն էր։*

*Այս երեկոյ պատուաւոր դուրս եկաւ նաև Յ. Տէր-Գրիգորեանը Զիմզիմովի դժուարին դերի ծանրութեան տակից։ Գ. Տէր-Գրիգորեանին չճանաչողը այն երեկոյ հազիւ թէ կարողանար գուշակել, որ դերակատարը ոչ թէ դերասան, այլ սիրող է միայն։ Մնացած բոլոր դերասան դերակատարներից անպայման բարձր էր այս երեկոյ պ. Յ. Տէր-Գրիգորեանը։*

*Պէպոյի դերակատարն էր պ. Սեւումեանը. սրա խաղն անցաւ անբաւարար, որովհետև բուն տիպը և խաղացածը իրարից մի քիչ հեռու էին, և բացի այդ՝ խաղի բոլոր տեսարաններում բացակայում էր միութիւնը և տիպի նոյնութիւնը։*

*Նոյնպէս բաւարար չէր տիկ. Յասմիկը, որն այլ դէպքերում զարմանալի յաջողութեամբ է ներկայացնում տեղական տիպերը։ Առանց ձանձրոյթի կարելի էր լսել ամբողջ ներկայացումը, սակայն Սունդուկեանի և Զմշկեանի յիշատակին նուիրուած ներկայացումը շատ աւելի յաջող և կատարեալ պէտք է լինէր։*

*Գ. Էդ.*

## ՀԻՆ ԱՍՏՈՒԱԾՆԵՐ

*Հոկտ. 7-ին Արտիստիկ թատրոնում Հայ դերասանական «Գուրգէն» ընկերութիւնը բացաւ իւր ներկայացումների շրջանը Շանթի «Հին Աստուածներ»ով։*

*«Հին Աստուածների» մասին խօսել և առանձնապէս կանգ առնելը անյարմար ենք համարում, քանի որ այնքան գրուել ու բեմադրուել է։*

*Խմբի լաւագոյն ու տաղանդաւոր ույժերը մասնակցում էին ներկայացման։ Գ. Զարիֆեանը կատարեց վանահօր դեր, որ տարաւ յաջողութեամբ։ Վանահայրը «Հին Աստուածների» մէջ ներկայանում է մեզ որպէս կամքի և բանականութեան երկրպագու, որով այդ դերը պահանջում է համապատասխան լրջութիւն և խոհութիւն։ Զարիֆեանին յաջողուեց պահպանել այդ յատկութիւնները. յուզիչ էր մանաւանդ այն տեսարանը, երբ վանահայրը հաւաքելով իր միաբաններին յայտնեց նրանց հին եկեղեցին քանդելու և նորը կառուցանելու մտադրութիւնը։*

*Աբեղայի դերում պ. Ալիխանեան անզուգական էր. այդ դերը պահանջում է զգացմունքների, հոգեկան նուրբ յուզումների և տառապանքների արտայայտութիւն, ինչ որ լաւագոյն կերպով յաջողւում է պ. Ալիխանեանին։ Իշխանուհու դերում տ. Մայսուրեան և Սեղայի դերում տ. Արուսեակը բաւարար էին. պէտք է շեշտել, որ վերջինի արտասանութիւնը մի քիչ անդիւրեկան էր և զգացւում էր երիտասարդական թարմութեան և աշխուժութեան պակասը։*

*Միւսներ բաւարար կերպով տարան իրենց դերերը։ Դահլիճը ծայրէծայր լի էր։*

*Իր առաջին ներկայացումով հայ դերասանական (Գուրգէն) ընկերութիւնը մեծ յոյս է ներշնչում ապագայ յաջողութիւնների վերաբերեալ։*

*Գեղարուեստագէտ*

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ
Հրատարակիչ՝ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

# Յայտարարութիւններ

*Կ. Հ. Բ. Ընկ. և Կ. Կոմիտէի նախագահ Ս. Յարութիւնեանցի անունով՝ Ամերիկա գաղթած մչեցի Խօսրով Կոնչոյեան 200 ռ. է ուղարկել, մչեցի Ալէքսան Մովսէսեանին յանձնելու համար։ Ալէքսան Մովսէսեանի հասցէն իմացողները թող բարեհաճեն յայտնել Հ. Բ. Ընկերութեան գրասենեակում։*

*Կ. Հ. Բ. Ը-թեան փախստականների համար հիմնուած*

**կազմատանը, տողագծարանի և ծրարնոցի**

*արհեստանոցում ընդունւում են ամեն տեսակ կազմարարական պատուէրներ։ Պատրաստւում են նաև զանազան մեծութեան ծրարներ, աշակերտական տետրեր և դիւանական գրքեր։*

*Դիմել Գանովսկայա փող. տ. Մանթաշեանի։*

**Մեծ Իշխանուհի Տատեանա Նիկոլաեւնայի Գլխաւոր Կոմիտէի** *նպաստներով հայ փախստական երեխաների համար բացուած և բացուելիք դպրոցների համար հարկաւոր են*

**ՈՒՍՈՒՑԻՉՆԵՐ-ՈՒՍՈՒՑՉՈՒՀԻՆԵՐ**

*(Թիւրքահայ և ռուսահայ)*

*Դպրոցների գործը ղեկավարելու համար ընտրուած* **ԴՊՐՈՑԱԿԱՆ ԽՈՐՀՈՒՐԴԸ** *որոշելով կազմել ուսուցչական ցանկ, առաջարկում է ցանկացողներին պաշտօնավարել վերոյիշեալ դպրոցներում, փութալ յայտնել Խորհրդին մանրամասն տեղեկութիւններ թէ որտեղից են, քանի տարեկան են, քանի տարի ուսուցչական պաշտօն են վարել, ո՛ր դպրոցումն են աւարտել իրենց ուսումը։ Պէտք է դիմել այս հասցէով՝ «Հայ Գաղթականական Ուսումնարանների Դպրոցական Խորհրդին»,* Училищному Совѣту школъ для дѣтей бѣженцевъ, Тифлисъ, Абасъ-Абадская, 7.

1116 3—3

*Տպարան «ՊՐՕԳՐԷՍ», Լ. Մ. Պօղոսեանի* Типографія „Прогрессъ", Лорисъ-Меликовск. 1. Дозволено военной ценз.

ՅԱՒԵԼՈՒԱԾ № 41
„ՀԱՄԲԱՒԱԲԵՐ"-Ի

# ԱՆՈՒԱՆԱՑՈՒՑԱԿ ՓԱԽՍՏԱԿԱՆ ՈՐԲ ԵՐԵԽԱՆԵՐԻ

## Ալաշկերտի որբանոցի որբերի ցուցակը

1916 թ. յունիսի 3-ին.

| №№ | ԱԶԳԱՆՈՒՆ ԵՒ ԱՆՈՒՆ | Տարիքը | Ո՞ր գիւղից | Ո՞ր շրջանից | |
|---|---|---|---|---|---|
| 219 | Ջհաղոյեան Ասօ | 6 | Խաշխալտաղ | " | |
| 220 | Ռուբէնեան Մուշեղ | 7 | Ղարաքոփրիկ | Խնուս | |
| 221 | Ռուբէնեան Ջանըմ | 11 | » | " | |
| 222 | Սափարեան Արամ | 12 | Տապաւէն | Ղլաթ | |
| 223 | Ստեփանեան Հայկ | 10 | Մկրագոմ | Մուշ | |
| 224 | Սրգոյեան Մելիք | 12 | Ղարաքոփրիկ | Խնուս | |
| 225 | Սարգսեան Մարգար | 10 | Երիշտեր | Մուշ | |
| 226 | Սողոմոնեան Մարմար | 3 | Թիլ | " | |
| 227 | Սիմէօնեան Հերքօ | 7 | Բոստաքեանդ | " | |
| 228 | Սափարեան Բենօ | 12 | Ղարաքոփրիկ | Խնուս | |
| 229 | Սահակեան Սիրան | 10 | Խնուս | Բերդի | |
| 230 | Սրքոյեան Սամսոն | 10 | Արդերդ | Մուշ | |
| 231 | Սարգսեան Մխիթար | 10 | Մանիկ | " | |
| 232 | Սահակեան Հրանտ | 10 | Խալչաուշ | Խնուս | |
| 233 | Սարգսեան Մաքէ | 9 | Բուլանուխ | — | |
| 234 | Սեդրոյեան Մաքէ | 8 | Տուման | Խնուս | |
| 235 | Սողոմոնեան Գրիգոր | 10 | Խասգիւղ | Մուշ | |
| 236 | Սահակեան Աղաւնի | 10 | Խալչավիշ | Խնուս | |
| 237 | Սերովբեան Թասօ | 8 | Խվներ | Մուշ | |
| 238 | Սահակեան Ասատուր | 13 | Օղնուտ | " | |
| 239 | Սերովբեան Շուշան | 12 | Խվներ | » | |
| 240 | Սագոյեան Գայազ | 3 | Խարդոց | " | |
| 241 | Սեդրաքեան Ազնիւ | 10 | — | — | |
| 242 | Սարգսեան Վերքին | 10 | Ալւարինգ | Մուշ | |
| 243 | Սահակեան Վարդան | 4 | Էլպիս | Խնուս | |
| 244 | Սերովբեան Մանուշակ | 10 | Աւզուտ | Մուշ | |
| 245 | Սարգսեան Ազատ | 9 | Երիշտեր | " | |
| 246 | Սեդոյեան Վարդէ | 7 | Ղարաքոփրիկ | Խնուս | |
| 247 | Սեդրոյեան Գոլիա | 4 | Ղարաչօպան | " | |
| 248 | Սահակեան Թարկիւլ | 12 | Հարամիկ | » | |
| 259 | Սաքոյեան Սուրմա | 7 | Ղարաչօպան | » | |
| 250 | Սեդրաքեան Նազար | 6 | Խնուս | — | |
| 251 | Սափարեան Սիսակ | 9 | Աւրան | Մուշ | |
| 252 | Սողոմոնեան Թուրէզ | 14 | Անտի | — | |
| 253 | Սափարեան Արեգ | 8 | Քաղքիկ | Խնուս | |
| 254 | Վարդանեան Ղուկաս | 6 | Խվներ | Մուշ | |
| 255 | Վարդոյեան Յովսէփ | 10 | Շերուանշեխ | Խնուս | |
| 256 | Վարդանեան Լուսիկ | 12 | Խալդավիշ | " | |
| 257 | Վահանեան Նարդօ | 8 | Երիշտեր | Մուշ | |
| 258 | Տիգրանեան Ալոկ | 4 | Մուշ | — | |
| 259 | Տիգրանեան Երուանդ | 9 | Ղարափոքրիկ | Խնուս | |
| 260 | Տոնապետեան Ռուբէն | 14 | Ալւարինջ | Մուշ | |
| 261 | Տիգոյեան Թասօ | 8 | Ղարաքոփրիկ | Խնուս | |

| | | | | |
|---|---|---|---|---|
| 262 | Տիկոյեան Աղնիւ | 8 | Արօս | Խնուս |
| 263 | Տոնոյեան Սալւօ | 5 | — | — |
| 264 | Տիգրանեան Սօնի | ? | — | — |
| 265 | Օվանեան Աղաւնի | 10 | Քաղքիկ | Խնուս |
| 266 | Օվակեան Սօսէ | 4 | Բուլանուխ | » |
| 267 | Օհանէսեան Էդուարդ | 7 | Ղարաքօփրիկ | » |
| 268 | Ոսկանեան Անդրանիկ | 10 | Կումկօմ | — |

## Կ. Հ. Բ. Ընկերութեան Նոր-բայազէդի որբանոցի որբերի ցուցակը

Կազմուած 1916 թ. յունիսի 20-ին

| №№ | ԱՆՈՒՆ ԱԶԳԱՆՈՒՆ | Տղայ թէ աղջիկ | Ծննդավայր | Վիլայէթ | Տարիք | Ծնողք | Մերձաւոր-ներ | Բնակա-վայր [illegible] | Ցեղանք |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| 1 | Արտաշէս Վարդարեան | տղայ | Կիւսնենց | Վան | 13 | ոչ | Հօրեղբայր | Աւգալադալու | այո |
| 2 | Եսայի Սահակեան | » | » | " | 13 | » | » | Էօրդակլու | » |
| 3 | Խօսրով Մեսրոպեան | » | » | » | 8 | մայր | | Նորադուզ | » |
| 4 | Սարգիս » | » | » | » | 6 | » | | " | ոչ |
| 5 | Անդրանիկ Աւետիսեան | » | » | » | 9 | ոչ | Եղբայր | Նոր Բայազէդ | » |
| 6 | Լեւոն Կարապետեան | » | » | » | 9 | » | Հօրեղբր կին | » | այո |
| 7 | Սիրուն Շահէնեան | աղջ. | » | » | 9 | մայր | | Նոր Բայազէդ | այո |
| 8 | Արբենիկ Սարգսեան | » | » | » | 8 | » | | Նոր Բայազէդ | ոչ |
| 9 | Արշակ Տոնոյեան | տղայ | Մերբար | Բիթլ. | 15 | ոչ | Հօրեղբայր | Բաղցի | այո |
| 10 | Զավահիր Եղոյեան | աղջ. | Բլուր | " | 14 | " | Եղբայր | Անտրոշ | » |
| 11 | Արեգնազ » | » | » | › | 9 | » | » | › | » |
| 12 | Վարդազատ Տ. Վահանեան | տղայ | Վան | Վան | 9 | մայր | | Նոր Բայազէդ | « |
| 13 | Գարմիլէ » » | աղջ. | » | » | 11 | » | | » | » |
| 14 | Վարդգէս Սիմոնեան | տղայ | › | » | 10 | » | Եղբ. քոյր | " | " |
| 15 | Յակոբ Մարտիրոսեան | « › | Կեմ | › | 14 | » | Հօրեղբայր | Երեւան | » |
| 16 | Գուրգէն Տիգրանեան | » | Բերդակ | Վան | 11 | հայր | | Ղըխըուլաղ | այո |
| 17 | Միհրան » | › | › | » | 13 | » | | • | • |
| 18 | Լեւոն " | » | ›. | » | 10 | » | | " | » |
| 19 | Միքայէլ Սեդրաքեան | » | " | » | 12 | ոչ | Հօրեղբայր | | » |
| 20 | Պետրոս Սիմոնեան | › | » | » | 13 | մայր | | Նոր Բայազէդ | » |
| 21 | Միհրան Մխիթարեան | › | » | › | 12 | › | | " | » |
| 22 | Ստեփան « | » | » | » | 9 | » | | " | ոչ |
| 23 | Յարութիւն Գէորգեան | » | » | » | 10 | հայր | | Ղըխըուլաղ | այո |
| 24 | Վարդանուշ " | աղջ. | » | » | 8 | › | | » | ոչ |
| 25 | Տիգրան Սիափոշեան | տղայ | Ծղաք | Բիթլ. | 13 | ոչ | Եղրօր կին | Արզաքան | այո |
| 26 | Գայծառ Շաքրոյեան | աղջ. | " | " | 6 | » | Հօրեղբայր | » | ոչ |
| 27 | Սեդրաք Խաչատուրեան | տղայ | » | » | 10 | » | Քեռի | " | այո |
| 28 | Ալմաստ Սափարեան | աղջ. | » | " | 9 | մայր | | Թուսքուլու | » |
| 29 | Ալեքսան Հարէթեան | տղայ | » | » | 10 | » | | Դիլիջան | այո |
| 30 | Աւետիս Տ. Աբգարեան | տղայ | Օղվանց | Վան | 12 | քոյր | | Թուսքուլու | այո |
| 31 | Մուրադ Մանուկեան | » | » | › | 12 | | Հօրեղբայր | Ղշլայ | " |
| 32 | Յակոբ Վարդանեան | » | » | " | 12 | հայր | | ˜ | » |
| 33 | Յովհաննէս Խէպոյեան | » | Կարճկան | » | 12 | | Հօրեղբ. կին | Ջօլախաչ | " |
| 34 | Զարուհի " | աղջ. | › | » | 14 | | " | » | » |
| 35 | Սահակ Արշակեան | տղայ | Բեաքեառլ. | Բիթլ. | 12 | ոչ | Հօրեղբայր | Զոչը | * |
| 36 | Աբրահամ » | » | » | » | 10 | " | » | - | » |
| 37 | Գարեգին Աւետիսեան | » | » | › | 9 | մայր | | " | ոչ |
| 38 | Առաքել Գէորգեան | › | Խորանց | Վան | 13 | մայր | | Անտրոշ | այո |
| 39 | Խաչատուր Ստեփանեան | » | Խակե | Բիթլ. | 10 | ոչ | Եղբայր | Նոր Բայազէդ | " |

| | | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| 40 | Այվազ Տիգրանեան | » | » | " | 9 | . | » | » | » |
| 41 | Խաչատուր Յարութիւնեան | » | » | » | 14 | » | » | Քերիմբեանդ | » |
| 42 | Երուանդ Տ. Մելիքեան | » | " | » | 13 | մայր | | Նոր Բայազէդ | " |
| 43 | Կարապետ Մկրտչեան | » | » | " | 12 | մայր | | Քերիմբեանդ | » |
| 44 | Սահակ Մանուկեան | » | Խարխոց | " | 11 | ոչ | Հօրեղբայր | Շարանլը | » |
| 45 | Համբեակ Յակոբեան | " | Խուլեկ | " | 15 | ոչ | Հօրեղբայր | Քորդակլու | - |
| 46 | Մարգար Եղոյեան | » | » | » | 7 | " | Հօրեղբ. կին | » | > |
| 47 | Յարութ. Սիմոնեան | " | » | " | 7 | » | Հօրաքոյր | Նոր Բայազէդ | ոչ |
| 48 | Սիմոն Մելքոնեան | » | » | " | 10 | | Հօրեղբայր | Զաչա | այո |
| 49 | Սառա » | աղջ. | » | " | 11 | » | » | » | » |
| 50 | Ագատ Մանասեան | տղայ | » | » | 7 | " | » | » | ոչ |
| 51 | Սարգիս Տ. Նահապետեան | » | " | » | 14 | ոչ | | Սախթա | » |
| 52 | Թէոս Պետրոսեան | " | Օձ | Վան | 10 | հայր | | Երանոս | այո |
| 53 | Ձաւէն » | » | » | » | 5 | " | | » | ոչ |
| 54 | Յարութիւն Բողոյեան | » | Շամս | » | 14 | ոչ | Եղբայր | Բասարբէչար | այո |
| 55 | Աբէլ » | " | » | » | 5 | > | » | " | ոչ |
| 56 | Համբեակ Խաչատուրեան | » | » | » | 9 | մայր | ոչ | > | այո |
| 57 | Վարդան Մովսէսեան | » | » | » | 12 | ոչ | Եղբայր | Ղրխբուլաղ | . |
| 58 | Միհրան Յովհաննիսեան | " | Դարաբէկ | Վան | 7 | մայր | | Նոր Բայազէդ | ոչ |
| 59 | Աշխէն Յակոբեան | աղջ. | Համադան | Բիթլ. | 10 | ոչ | Հօրեղբայր | Նոր Բայազէդ | ոչ |
| 60 | Միհրան Բօրոլեան | տղայ | » | " | 4 | մայր | | Նոր Բայազէդ | ոչ |
| 61 | Յարութիւն Ղարիպեան | » | Ղուրուպաշ | Վան | 6 | մայր | | » | ոչ |
| 62 | Աղասի » | » | » | " | 4 | ոչ | Եղբայր | » | » |
| 63 | Սիրուն - | աղջ. | » | » | 10 | մայր | | Անորոշ | այո |
| 64 | Ղազար Մանուկեան | տղայ | » | " | 11 | ոչ | Հօրեղբայր | Գէօզալդարա | » |
| 65 | Մկրտիչ Գարեգինեան | » | Արճէշ | » | 10 | » | Քեռու կին | Նոր Բայազէդ | » |
| 66 | Արշալոյս Նազարեան | աղջ. | » | » | 9 | " | | " | » |
| 67 | Նազար Սողոմոնեան | տղայ | Տապավ. | Բիթլ. | 10 | ոչ | Պապ | » | » |
| 68 | Քիշմիշ » | աղջ. | » | » | 9 | » | » | » | |
| 69 | Համաս Աբրահամեան | » | » | " | 6 | " | | Փաշաքեանդ | " |
| 70 | Ագատ Տիգրանեան | տղայ | Սիպ. | Վան | 7 | ոչ | Քեռի | » | ոչ |
| 71 | Փերող " | աղջ. | » | » | 10 | " | » | » | ոչ |
| 72 | Արամ Մխիթարեան | տղայ | Մոկս | " | 9 | մայր | | » | այո |
| 73 | Ջնդօ Յովհաննիսեան | » | Համշատ | " | 9 | ոչ | Հօրեղբայր | Երանոս | » |
| 74 | Միհրան Գէորգեան | " | Ջէթկան | Բիթլ. | 14 | " | Եղբայր | Կարս | » |
| 75 | Պետրոս > | » | » | " | 12 | " | » | > | » |
| 76 | Փօղոս Պետրոսեան | » | » | » | 15 | " | Քոյր | Աշտարակ | » |
| 77 | Կնեազ Միսաքեան | » | » | " | 13 | մայր | | Գոմաձոր | » |
| 78 | Եսթեր Եղոյեան | աղջ. | » | » | 10 | ոչ | Հօրեղբայր | Նորադուզ | ոչ |
| 79 | Բենեամին » | տղայ | » | » | 8 | " | » | " | » |
| 80 | Սեդրաք Բողոյեան | » | Խերթ. | » | 12 | մայր | | Գոմաձոր | այո |
| 81 | Արամ Յարութիւնեան | " | Դաշտ | " | 12 | " | | Նորադուզ | » |
| 82 | Վաղարշակ " | » | " | » | 10 | » | | » | » |
| 83 | Վարդգէս Մկոյեան | » | Ոսկրանց | Վան | 11 | մայր | | Գոմաձոր | » |
| 84 | Բաղդասար > | » | » | » | 12 | " | | " | ոչ |
| 85 | Սահակ » | » | " | » | 7 | ոչ | Եղբայր | Նորադուզ | » |
| 86 | Սեդրաք Պօղոսեան | " | Հերմնուց | Բիթլ. | 10 | մայր | | » | այո |
| 87 | Ալմաստ " | աղջ. | " | » | 12 | » | | » | » |
| 88 | Մարիամ Սափարեան | աղջ. | Հերմնուց | Բիթլ. | 10 | հայր | | Նոր Բայազէդ | այո |
| 89 | Լեոն » | տղայ | » | " | 10 | ոչ | Հօրեղբայր | Գէօզալդարա | » |
| 90 | Երուանդ » | " | » | " | 11 | » | » | > | » |
| 91 | Գասպար Ղազարեան | > | . | » | 6 | » | » | Ծակքար | ոչ |
| 92 | Գէորգ Խուչեան | . | Ջամալդէն | » | 6 | " | » | Նոր Բայազէդ | » |
| 93 | Սերոփ Ներսոյեան | » | Փաղգէտիկ | Վան | 7 | " | Հօրաքոյր | » | ոչ |
| 94 | Յովսէփ Յակոբեան | > | Զարան | » | 9 | մայր | | " | այո |
| 95 | Գրիգոր Կարոյեան | > | Լաթար | Բիթլ. | 9 | ոչ | Քեռի | Անորոշ | այո |
| 96 | Նուարդ Պօղոսեան | աղջ. | " | » | 14 | մայր | | > | » |
| 97 | Ծաղիկ Պետրոսեան | > | " | " | 10 | ոչ | Քեռի | Թայչարուխ | այո |
| 98 | Անուշ Գէորգեան | » | " | " | 10 | » | » | » | » |
| 99 | Մարիամ » | » | " | » | 9 | մայր | | » | » |
| 100 | Թադէոս " | տղայ | " | » | 11 | " | | " | > |
| 101 | Մաքրուհի Մինասեան | աղջ. | Կապպէն | Վան | 9 | ոչ | | Գէօզալդարա | ոչ |
| 102 | Վերգուշ Խաչոյեան | " | Փրխուս | Բիթլ. | 10 | » | Հօրեղբայր | Փաշաքեանդ | այո |

| | | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| 103 | Միսաք Յարութիւնեան | տղայ | ,, | ,, | 6 | մայր | | Նոր Բայազէդ | ոչ |
| 104 | Ջանդաս » | աղջ. | ,, | ,, | 8 | ,, | | ,, | ,, |
| 105 | Արշակ Մխիթարեան | տղայ | ,, | ,, | 15 | ,, | | ,, | այո |
| 106 | Կարապետ Միսակեան | ,, | ,, | ,, | 12 | մայր | | ,, | ,, |
| 107 | Արմենակ Միսակեան | ,, | ,, | ,, | 10 | ,, | | ,, | ,, |
| 108 | Եղիշէ Քամալեան | ,, | ,, | ,, | 10 | ոչ | Եղբայր | Փաշաքեանդ | ոչ |
| 109 | Միհրան Մուրադեան | ,, | ,, | ,, | 15 | մայր | | Նոր Բայազէդ | այո |
| 110 | Սարգիս Մանուկեան | ,, | Աղչաւէրան | ,, | 10 | ոչ | Հօրեղբայր | Քաղցի | ,, |
| 111 | Բագրատ Գէորգեան | ,, | Անջալու | ,, | 9 | հայր | | Գոմաձոր | ոչ |
| 112 | Սահակ ,, | ,, | Մողրաքաղ | ,, | 8 | ոչ | Հօրեղբայր | Անորոշ | ոչ |
| 113 | Սահակ Բաղդիկեան | ,, | Գոմ | Վան | 8 | հայր | | Անորոշ | ,, |
| 114 | Հաֆօ Մանուկեան | տղայ | Առէն | ,, | 8 | մայր | | Նորադուզ | այո |
| 115 | Հայաստան Մանասեան | աղջ. | Բլուրմակ | Վան | 7 | մայր | | Նոր Բայազէդ | այո |
| 116 | Գէորգ Սահակեան | տղայ | Խաւենց | ,, | 10 | հայր | | Ջոջո | այո |
| 117 | Թէոս Սահակեան | տղայ | Խաւենց | Վան | 8 | հայր | | Ջոջո | ոչ |
| 118 | Արսէն Յովհաննիսեան | ,, | Իրիշատ | ,, | 10 | ոչ | Քեռի | Կամարլու | այո |
| 119 | Սէյրան ,, | աղջ. | ,, | ,, | 6 | ոչ | ,, | ,, | ոչ |
| 120 | Հայկանուշ Մանուկեան | ,, | Խաչլու | Բիթլ. | 7 | ,, | | Գէօլ | ոչ |
| 121 | Սիա Գասպարեան | ,, | Քերծ | Վան | 7 | ոչ | Եղբայր | ,, | ոչ |
| 122 | Նանուշ ,, | ,, | ,, | ,, | 8 | ոչ | ,, | ,, | ոչ |
| 123 | Մարիամ Մուրադեան | ,, | Նորդուզ | ,, | 8 | մայր | | Ղուլալի | այո |
| 124 | Մովսէս Միսակեան | տղայ | Փիրկարիպ | ,, | 12 | ,, | | Նոր Բայազէդ | այո |
| 125 | Միքայէլ Միսակեան | ,, | ,, | ,, | 10 | ,, | | ,, | ,, |
| 126 | Վարդան Մանասեան | ,, | Նորգիւղ | ,, | 8 | ոչ | Եղբայր | Աթամխան | ,, |
| 127 | Սիրուն Ստեփանեան | աղջ. | ,, | ,, | 11 | ոչ | Քոյր | Կարանլղ | ոչ |
| 128 | Ջուլումաթ Պետրոսեան | տղայ | ,, | ,, | 9 | մայր | | ,, | ոչ |
| 129 | Բաղդասար Մանուկեան | ,, | Հզիւրք | Բաթլ. | 15 | ոչ | Քոյր | Քոսամահմէդ | այո |
| 130 | Սեդրաք Սարգսեան | ,, | ,, | ,, | 15 | մայր | | ,, | ,, |
| 131 | Աբրահամ Իսրայէլեան | ,, | Խօշգեալդի | ,, | 14 | մայր | | Փաշաքեանդ | ,, |
| 132 | Գէօզէ ,, | աղջ. | ,, | ,, | 12 | ,, | | ,, | ոչ |
| 133 | Նատաշ Սահակեան | ,, | Օրդակլու | Բայզ. | 12 | ոչ | Մամ | Էօրդակլու | ոչ |
| 134 | Երուանդ Մկրտչեան | տղայ | Խակե | Բիթլ. | 10 | մայր | | Քիրիմքէնդ | այո |
| 135 | Մանեա Պետով | աղջ. | Բայազէդ | Բայզ. | 10 | մայր | | Նոր Բայազէդ | ոչ |
| 136 | Նաստիա ,, | ,, | ,, | ,, | 5 | ,, | | ,, | ,, |
| 137 | Նիւրա ,, | ,, | ,, | ,, | 3 | ,, | | ,, | ,, |
| 138 | Կոլիա ,, | տղայ | ,, | ,, | 1 | ,, | | ,, | ոչ |

*Սոյն 138 որբերից 100-ը տղայ են և 38 աղջիկ, որից 90-ը գրագէտ (դպրոց յաճախող), իսկ 48 անգրագէտ*